# ՀԻՄՆԱԿԱՆ

# ՆՈՐ ԵՂԱՆԱԿ

## ՖՐԱՆՍԵՐԷՆ ՇԱՐԱԴՐՈՒԹԵԱՆ



Ի ՊԷՏՍ

Ազգային վարժարանաց եւ առանձին ուսանողաց

**Բ. Տարի**


ՅՕՐԻՆԵԱՑ

Յ. Թ. ՀԻՆԴԼԵԱՆ




Գին 5 ղրուշ

معارف نظارت جليله سنك رخصتيله طبع اولنمشدر


ՏՊԱԳՐ. (Ա. Մ.) ՀԱՅ-ԳՐԱՇԱՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Կ. Պոլիս—Պասար-Ալի փողոց թիւ 52

8881

Hindlean

# ՀԻՄՆԱԿԱՆ
# ՆՈՐ ԵՂԱՆԱԿ
## ՖՐԱՆՍԵՐԷՆ ՇԱՐԱԴՐՈՒԹԵԱՆ

321

Himnakan nor eghanak



Ի ՊԷՏՍ

Ազգային վարժարանաց եւ առանձին ուսանողաց

**Բ. Տարի**

ՅՕՐԻՆԵԱՑ

Յ. Թ. ՀԻՆԴԼԵԱՆ



Գին 5 դրուշ

معارف نظارت جليله‌سنك رخصتيله طبع اولنمشدر

ՏՊԱԳՐ. (Ա. Մ.) ՀԱՅ-ԳՐԱՇԱՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

Կ. Պոլիս—Պապը-Ալի փողոց Թիւ 52

1888

 Երկասիրողին ձեռագիր ստորագրու-թիւնն չկրող օրինակներն անվաւեր են ։



Տպագր. Հայ-Դպրաշարաց Ընկերութեան
Կ. Պոլիս —Պապը-Ալի փողոց Թիւ 52

ԱՌ

ՏԷՐ ՌԷԹԷՈՍ Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

ՄԵԾԱՆՈՒՆ ՈՒՍՈՒՑԻՉՆ ԻՒՐ

# ՁՕՆ

ՄԵԾԻ ՍԻՐՈՅ

ԵՒ

ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

ՁՈՐ ՄԱՏՈՒՑԱՆԷ

խոնարհ սան իւր

Յ. Թ. Հ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Քաջալերեալ այն ներողամիտ ընդունելութենէն՝ որոյ արժանացաւ Հիմնական Եղանակիս Ա. Տարին, կը համարձակիմ ի լոյս ընծայել նորա Բ. Տարին եւս, լիայոյս թէ սա եւս պիտի կարենայ քաջ առաջնորդ մ'ըլլալ նոցա՝ որք կը փափաքին անսխալ գրել եւ խօսիլ Ֆրանսերէն։ Հիմնական Եղանակիս Ա. Տարւոյ նպատակն էր դիւրուսոյց մէթոտով մը սորվեցնել Ֆրանսերէն Քերականութեան ութն մասերն եւ ամենէն կարեւոր գիտելեաց շատերն —որոց ամէնուն ի կիրառութիւն՝ գործնական հրահանգներ —այնպէս որ ուսանողն՝ զայն աւարտելով կարող է պարզ հայերէն գրուածներ ի ֆրանսերէն թարգմանել։ Սոյն Բ. Տարւոյն նպատակն է ուսուցանել՝ միշտ նոյն դիւրուսոյց մէթոտով՝ Ֆրանսերէն լեզուի համաձայնութեան կանոններն եւ խել մը կարեւոր գաղղիաբանութիւններ. ի մի բան՝ ինչ որ անհրաժեշտ է Ֆրանսերէն շարադրելու՝ կամ որ նոյն է ասել՝ ա եւ է հայ գրութիւն ի Ֆրանսերէն թարգմանելու կարող ըլլալու համար։ Պարզ ակնարկ մը բաւական է համոզուելու համար թէ սոյն գործոյն մէջ ի գործ դրուած մէթոտն նոր է բոլորովին եւ ոչ միայն կը հարթէ ուսանողին ամէն այն դժուարութիւններ՝ որք կրնան կասեցնել իւր քայլերն, այլ եւ Ֆրանսերէն լեզուն գրելու եւ խօսելու համար հարկ եղած գիտելեաց ու ծանօթու-

թեանց ամենաստուար պաշար մը կ'ընձեռէ իրեն ։ Սոյն Բ. Տարւոյ մէջ մասնաւորապէս հոգ տարուած է Թարգմանելի հատուածներու ընտրութեան. Ջանացած եմ նաեւ նոցա մէջ պէսպիսութիւն դնել, որպէս զի ուսանողն կարենայ ամէն տեսակ գրութեանց միանգամայն վարժութիւն ստանալ ։ Համաձայնութեան կանոններուն համար հետեւած չ'եմ, ինչպէս կը տեսնուի, քերականաց ընդունած դասակարգութեան, որովհետեւ նպատակս զուտ քերականութիւն սորվեցնել չ'է. այդ կանոններուն՝ կարեւորութեան կարգը տուած եմ, բացատրելով զայնս կարելի եղածին չափ համառօտ եւ դիւրըմբռնելի ոճով, եւ խառնելով անոնց գաղղիաբանութիւններ, նոցա ուսումը տաղտկալի չ'գործելոյ համար ուսանողին ։ Այդ կանոններուն եւ գաղղիաբանութեանց անմիջական կիրառութիւնն Կրթութեանց մէջ է, ուր կան նաեւ բոլոր այն դժուարին բառերն կամ ասութիւններն որք կը գտնուին Թարգմանելի հատուածներուն մէջ, եւ որոց գաղղիարէն թարգմանութիւնն նախապէս քովերնին դրուած է. այս կերպով այդ դժուարին ասութիւններն, որք բնականաբար միշտ գործածուածներն են, եւ կանոններն լաւագոյնս պիտի դրոշմին ուսանողին մըտաց մէջ ։ Եւ ամենէն փոքր դժուարութիւններն իսկ խնայելու համար ուսանողին, Թարգմանելի հատուածներուն ու Կրթութեանց մէջ, թուանշաններ դրած եմ հոն՝ ուր հայերէն շարադրութեան կարգը կրնայ դժուարութիւններ յարուցանել ի ֆրանսերէն թարգմանութեան մէջ։

Յայտնի ճշմարտութիւն մ'է թէ դասագիրքը առաջնորդ մ'է լոկ, եւ թէ որչափ ալ կատարեալ ըլլայ այն՝ ա՛յն ատեն միայն կրնայ սպասուած օգուտն արտադրել, երբ բարւոք եղանակաւ գործածուի։ Ուստի ներուի ինձ, իբր խոնարհ հեղինակին գրքուկիս, մի քանի խօսք ընել նորա գործածութեան մասին։ Մէն մի դասի գլուխն դրուած կանոններն կամ դիտելիքներն աղէկ մը բացատրելէ եւ ըմբռնել տալէ վերջ միայն՝ թարգմանել տալ հրահանգն եւ կրթութիւնքն՝ որոց սրբագրութեան ըստ ամենայնի ուշի ուշով հսկել. ապա սրբագրուած հրահանգն եւ կրթութիւնքն սերտել տալով զայնս գրել տալ, միանգամայն եւ բերանացի ըսել տալ։ Աւելորդ է ըսել թէ Պատ. Ուսուցիչն կրնայ ասոնց միացնել խել մը ուրիշ միջոցներ՝ ըստ կարողութեան ուսանողին, ինչպէս՝ սրբագրուած հրահանգն ու կրթութիւններն մասնաւոր տետրի մը մէջ անսխալ ընդօրինակել տալէ վերջ, նոցա մէջ գտնուած բառերուն վրայ այլ եւ այլ կրթութիւններ ընել տալ բերանացի եւ գրաւոր, բառագիտական կրթութիւններ հոմանիշներու, նմանաձայն բառերու, ներհակներու, գոյական մը կազմուած ածականներուն, բայերուն, մակբայներուն վրայ, եւ փոխադարձաբար, եւն, եւն։ Այս մեթոտով գործածուելով կը համարձակիմ ըսել թէ սպասուած օգուտն պիտի կարենայ յառաջ բերել սոյն գործն. կը համարձակիմ ըսել, որովհետեւ ես ինքս փորձն ըրած եմ, սոյն գործս ապագրութեան

յանձնելէ առաջ, եւ աշակերտք քաղած են բոլոր այն օգուտներն զորս ընձեռելու սահմանեալ է ներկայ գործն ։

Ֆրանսերէն լեզուի ուսուցման սոյն նոր ընթացքն ինքնըննաել ուսանողաց եւս օգտակար կացուցանելու համար, մտադիր եմ Ա. եւ Բ. տարիներու բանալիներն եւս հրատարակել ի մօտոյ ։

Կը յուսամ թէ սոյն նոր ընթացքն կուգայ պակաս մը լնուլ, որովհետեւ շատ ճշմարիտ է թէ Ֆրանսերէն լեզուի ուսուցման սահմանեալ գործերն կարի սակաւաթիւ են առ մեզ ։ Իցի՜ւ թէ սոյն ընթացքն կարենար արժանանալ քաջալերութեան, ինչ որ միայն համարձակութիւն պիտի տար ինձ ուրիշ դիւրուսոյց եղանակներով խմբաւանին դիւրացընելու Պատ. Դասատուաց գործն, ի մասին ուսուցման Ֆրանսերէն լեզուի ։

Յ. Թ. Հ.



### ՀԻՄՆԱԿԱՆ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ

# ՖՐԱՆՍԵՐԷՆ ՇԱՐԱԴՐՈՒԹԵԱՆ

### Բ. ՏԱՐԻ

## ԿԷՏԱԴՐՈՒԹԻՒՆՔ

*Ֆրանսերէնի մէջ գործածուած կէտադրութեան նշաններն են.* ստորակէտ (virgule), կէտ-ստորակէտ (point-virgule), երկու կէտ (deux points), կէտ (point), հարցման կէտ (point d'interrogation), զարմացական կէտ (point d'exclamation), չակերտ (guillemets), գիծ (tiret), փակագիծ (parenthèse):

Ստորակէտը (,) *որ կը գործածուի պարբերութեան մը մէջ իրր թուումն մասանց գործածեալ բառերը կամ միջանկեալ խօսքերը զատելու համար, կը համապատասխանէ հայերէն* ըստորակէտ*ին կամ* բութ*ին. Ինչպէս*, Ամբծութիւնը, հլութիւնը, պարզամտութիւնը մանկութեան առաքինութիւններն են. La candeur, la docilité, la simplicité sont les vertus de l'enfance. Բարեկամն՝ նուէր երկնային՝ բանկագին գանձ մ'է. Un ami, don du ciel, est un trésor précieux.

կէտ-ստորակէտը՝ (;) *որ ընդհանրապէս հայերէն* միջակէտ*ին կը համապատասխանէ՝ կը գործածուի միևնոյն պարբերութեան* գլխաւոր բաժանումները *զատելու համար, մանաւանդ երբ ստորաբաժանմանց համար ստորակէտ գործածուած է ։ Ինչ* . Հաղարջները , խաղողները հատապտուղներ են . կեռասները , սալորները կուտաւոր պտուղներ են . Les groseilles , les raisins , sont des baies ; les cerises , les prunes, sont des fruits à noyau (նուայօ) .

Երկու կէտն (:) *ալ ընդհանրապէս հայերէն* միջակէտ*ին տեղ կը գործածուի հետևեալ պարագայներուն մէջ* .

(Ա)· *Մէկու մը խօսքը վկայութեան բերուած ատեն . Ինչ* . Աստուած ըսաւ . լոյս ըլլայ . Dieu dit : Que la lumière soit faite .

(Բ) . *Երբ խօսք մը առջի խօսքը կը մեկնէ , կ'ընդարձակէ . Ինչ* . Օրէնք հագուստներու կը նմանին . քիչ մը կը նեղեն, բայց կը պահպանեն . Les lois ressemblent aux habits: elles gênent un peu , mais elles préservent .

(Գ) . *Երբ ընդհանուր խօսք մը ըսելէ վերջ՝ մասերը կը թուեմք . կամ երբ մասերը թուելէ վերջ՝ ընդհանուր խօսքը կ'ըսեմք ։ Ինչ*. Ահա երեք բարի բժիշկներ . ժուժկալութիւն , զուար-

թութիւն եւ աշխատութիւն ։ Voici trois bons médecins: la tempérance, la gaieté et le travail.

Ժուժկալութիւն, զուարթութիւն, աշխատութիւն. ահա՛ երեք աղէկ բժիշկներ. Tempérance, gaieté, travail : voilà trois bons médecins.

Կէտը (.) *կը համապատասխանէ հայերէն* վերջակէտ*ին* ։

*Գալով* հարցման կէտ*ին* (?), զարմացման կէտ*ին* (!), չակերտ*ին* («....») գիծ*ին* (—) *և* փակագիծ*ին* [()], *ասոնցմէ առաջինը կը գործածուի հայերէն* հարցման նշան*ին* (՞) *և երկրորդը*՝ երկար*ին* (՛) *տեղ. իսկ միւսները համանման են հայերէնին թէ ձևի և թէ գործածութեան մասին ։*

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

*Հարստութիւնը, հաճոյքները, առողջութիւնը ցաւեր* (mal) *կը դառնան* (devenir) *անոնց համար որ չեն գիտեր զայնս գործածել. —Այս տըղայն խելօք՝ աշխատասէր՝ հլու եւ պարկեշտ է. Նա միշտ վարձատրութիւններ կ'ընդունի իր ծնողքէն ու դասատուներէն. — Տղայք, կ'ըսէր մեծ հայրս, [2]միշտ [1]աշխատեցէք. [2]երբէք [3]ծոյլ [1]մի՛ լինիք. — Մնացեալը կը մեռնի. կրօնքը չ'մեռնիր*

երբէք · —Ի՞նչ գեղեցիկ օդ կ'ընէ այսօր · —Այո, բայց խիստ տաք է (կ'ընէ)· կարծեմ թէ անձրեւ պիտի գայ (պիտի անձրեւէ) · —Ժամը քանի՞ն է· (Ի՞նչ ժամ է)· ⁴Երէկ ⁵իրիկուն (hier au soir) ³ժամացոյցս ²լարելու ¹մոռցայ · —Հացը սուղ չ'պիտի ըլլայ · Հունձքը շատ առատ եղաւ · —Կեսար ծերակոյտին գրեց · Եկայ, տեսայ, յաղթեցի · —Կաթ՝ հաց՝ պտուղ՝ (պտուղներ), խոտ՝ մաքուր ջուր· ահա մեր նախնեաց (aïeux) սնունդը· —Մայրը աղջըկանը ըսաւ · Ինչո՞ւ կուլաս, Մարիամ · չորցուր արցունքներդ· —Աղջիկը պատասխանեց· Ահ, եթէ գիտնայիր, մայրիկ· Թռչունս, սիրուն թռչունս թըռաւ :



## ԴԱՍ Բ

**De** որ սեռականի եւ բացառականի նշանն է ֆրանսերէնի մէջ, երբեմն գործիական նշանի տեղ ալ կը գործածուի : Ինչ · Ցարդով պատել, envelopper *de* paille · Արցունքով թրջել, arroser *կամ* mouiller *de* larmes. Սուր ձայնով,

(1) Փակագծի մէջ դրուած բառը կը ցուցնէ թէ այն բառը պէտք է գործածել փոխանակ իրմէ առաջ գտնուող բառին :

d'une voix aiguë, եւն։ Ուստի, յետագայ պատմութեան մէջ գտնուած ինչով և ինչէ հատուածապէս կը թարգմանուին de quoi ով։

## ՄՈՒՐԱՑԿԱՆԻՆ ՊԱՏԱՍԽԱՆՆ

Մարդ մը կը հարցնէր խեղճ մուրացկանի մը թէ (1) ինչով կ'ապրէր։ Աղքատը անոր (2) պատասխանեց. Եթէ ինձ հարցուցած ըլլայիք (դերակատար) թէ ինչէ կը մեռնիմ, ձեզ պիտի պատասխանէի թէ (que) անօթութենէ կը մեռնիմ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Եղբայրս անտառին մէջ թունաւոր օձ մը նշմարեց երէկ եւ սուր ձայնով պոռաց. «օգնութի՛ւն (au secours!), օգնութի՛ւն»։ —Եթէ ձեր խորհուրդներուն (ձեր խորհուրդները) հետեւած ըլլայի, երջանիկ պիտի ըլլայի. բայց, աւա՛ղ, ձեր խորհուրդներուն չ'հետեւեցայ, եւ հիմայ դժբաղդ եմ։ — Մեր խեղճ գիւղացւոյն խրճիթին տանիքը յարդով (chaume) ծածկուած է։ — Եթէ ձեր քոյրը խորհր-

---

(1) Այս գիրով գրուած բառերը կը ցուցնեն թէ այն բառերը ֆրանսերէնի պէտք չ'է թարգմանել։

(2) Յիշեցէք թէ բայի մը դերանուն խնդիրները բայէն առաջ կը դրուին. (Տես Հիմն. Նոր Եղանակ Ֆրան. շարադր. Ա. տարի, էջ 73, 74, 75, 76)։

ղօղս հետեւած ըլլար՝ զայն փրկած պիտի ըլլայի․ —Խեղճ մարդը անօթութենէ եւ ծարաւէ կը մեռնի․ հաց եւ պանիր տուէք իրեն․ —Կեցցէ՜ արքայն։



## ԴԱՍ Գ․

Կը յիշէք անշուշտ թէ ֆրանսերէնի մէջ նախադրութեանց մեծագոյն մասը հայցական հոլով խնդիր կ'առնէ: Այդ կարգի նախադրութեանց մէջէն է **chez** ;տունը , քովը: Ինչ․ քրոջս «տունը» կ'երթամ․ Je vais *chez* ma sœur, (և ոչ chez de ma sœur)․ բարեկամիս «քովը», *chez* mon ami (և ոչ chez de mon ami)․ դրացիներէն մէկուն «տունը», *chez* un de ses voisins․ Եւն․

## Ո՞ՒՐ Է ԱՍՏՈՒԱԾ

[1]Հայր մը [4]իւր վեց [6]տարեկան (âgé de six ans) [5]տղայն [2]տարաւ [3]օր մը իւր բարեկամներէն մէկուն տունը։ Այս տղայն շատ խելացի էր։ Բարեկամը անոր ըսաւ․ «Տղայս, քեզի նարինջ մը պիտի տամ եթէ ինծի ըսես թէ ու՞ր է Աստուած»։ Տղայն պատասխանեց․ «Ըսէք ինծի, խնդրեմ, (je vous prie), թէ ուր նա չ'է, եւ ես ձեզի երկու նարինջ պիտի տամ։»

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Քանի՞ տարեկան էք (ի՞նչ տարիք ունիք), պարոն. —Ես տասը տարեկան եմ (տասը տարի ունիմ), եւ եղբայրս քսան եւ մէկ տարեկան է (քսան եւ մէկ տարիներ ունի). —[2]Երէկ ձեր բարեկամին տունը [1]գացի (j'ai été), [7]իրեն [6]համար [5]գնած [4]գիրքս (գիրքը զոր գնած եմ իրեն համար) [2]իրեն [3]տալու [1]համար. — Եթէ դասերնիդ սորված ըլլայիք, ձեզի թատրոն պիտի տանէի. —Ըսէք ինձ, խնդրեմ, քանի՞ տարեկան է եղբայրնիդ. — Իւր տարիքը [2]աղէկ [1]չ'եմ գիտեր, բայց կարծեմ թէ տասըն եւ մէկ տարեկան է. —Թղթավաճառին տունը [1]գացէք. — [3]Եղբայրս [1]ո՞ւր [2]է. —Իւր ընկերոջ տունըն է:



## ԴԱՍ Դ.

Երբ անունի մը ինչ բանի գործածուելուն միտ դրուի՝ ետեւէն առանց յօդի **à** նախադրութիւնը կը դրուի: ինչ. թէյի տուփ, boîte à thé (այսինքն թէյ դնելու տուփ): իսկ երբ անունի մը մէջ եղած նիւթին վրայ կամ պարունակչին նիւթին մը չափին վրայ խօսուի՝ **de** կը դրուի. ինչ. տուփ մը թէյ, une boîte *de* thé, գաւաթ մը սուրճ, une tasse *de* café. աման մը կաթ, un pot *de* lait:

## ՊԱՏԿԵՐ ԿԵՆԱՑ

Խելացի հայր մը օր մը կը պտըտէր իւր որդւոյն հետ գեղեցիկ պարտիզի մը մէջ։ Պարտէզը զարդարուած էր շատ ծառերով (de . . .) եւ ամէն տեսակ (de toute espèce de . . .) ծաղիկներով։ Գործունեայ պարտիզպան մը տունկերը կը մշակէր։ Հայրը իւր որդւոյն ըսաւ. «Մարդկային կեանքը պարտէզ մ'է. բարի գործերը գեղեցիկ ծաղիկներ եւ պտղատու ծառեր են. բայց զանոնք տնկող եւ մշակող պարտիզպանը (պարտիզպանը որ զանոնք կը տնկէ եւ կը մշակէ) մարդուն բարի կամքն է։ Իմաստուն եղիր, որդեակ։»

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Եթէ օդը գեղեցիկ ըլլայ (ընէ), այս երեկոյ եղբօրս հետ պիտի պտըտիմ. —Այս երիտասարդին սենեակը պատկերներով զարդարուած է. — Մարդկային կեանքը լի է (plein de . . .) շատ մը վըտանգներով. Երանի՜ այնմ (heureux celui) որ գիտէ անոնցմէ (զանոնք) խորշիլ. — [4]Սենեակիս [3]պատերը [2]նկարներովպիտի [1]զարդարեմ. — [2]Այսօր [3]մեր [4]ժամանակը [1]անցուցինք ձուկ (ձուկեր), շիշ մը Պորտօի գինի, մարգարտէ սանտրներ, սուրճի սկահակներ [5]գնելով (àacheter).— [3]Առուակ մը [5]զով [4]ջուր [1]բերէք [2]մեզ. շատ (մեծ) ծարաւ ենք (ունիմք), եւ օ-

ղը խիստ տաք է (կ'ընէ) .— [2]Երէկ [3]շուկայ [1]գացի [4]ու-քրոջս համար երկու զոյգ սեւ ձեռնոց եւ կէս երկ-վեցեակ շապիկ [5]գնեցի . —Հօրեղբօրդ քեզի համար գնած ձեռագործի տուփը ո՞ւր է . —Կաթլին աման-նը [1]բերէք . կաթնավաճառը եկաւ .— [1]Երբ [3]շուկայ (1) (տրակ) [2]երթայք , (Ապ. անցեալ) կէս օխա շա-քար , տուփ մը թէյ , հինգ թերթ գծաւոր (à lignes) թուղթ եւ երկու գինւոյ շիշ [4]գնեցէք ։



## ԴԱՍ Ե.

*Երբ ածական մը մէկէ աւելի գոյականներու վերաբերի , ածականը* յոգնակի *կը դրուի ։ Եթէ գոյականները տարբեր սեռ ունենան , ածականը* արական յոգնակի *կը դրուի ։ Ինչ .* Քրոջս մանչը եւ աղջիկը աշխատասէր են . Mon *neveu* et ma *nièce* sont *appliqués.* Աղջիկս եւ հօրեղբօրս աղջիկը բարի են . Ma *fille* et ma *cousine* sont *bonnes* .

### ԿՈՎ

[4] Դաշտին (դաշտը) [3]մէջ [2]կովեր [1]տեսա՞ծ էք։ Նո-

---

(1) *Շարժում ցուցնող բայերէն ետքը եկող գո-յականը տրական հոլով կը դրուի ։ Ինչ .* «Եկեղեցի» կ'երթամ , je vais *à* l'église .

քա ²շատ կը ¹սիրեն (1) անանկէ խօսով (de ...)։ Կը կարծէք թէ կերակուրնին վերջացուցած են եւ կը քնանան. բայց տակաւին իրենց բերանները կը շարժեն, ինչ որ (ce qui) որոճալ կը կոչուի։ Դիտեցէք իրենց կճղակները. անոնցմէ իւրաքանչիւրը երկու մասի բաժնուած (divisé en ...) է։ Կովը մեզ կուտայ իր կաթը, որ սննդարար ըմպելի մ'է. կաթով է (c'est) որ (que) կը պատրաստեմք սեր, կարագ, պանիր։ Կովին ձագը հորթ կը կոչուի։ Կովը շատ կը սիրէ իր հորթը։ Կովին եղջիւրները սանտր (սանտրեր) շինելու կը ծառայեն։ (1)

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Գ. Ցանկորին հօրեղբայրը եւ եղբօր որդին խելացի եւ աշխատասէր են. —Կ'ըսեն թէ (que) այս մարդուն կինը եւ աղջիկը շատ բարի են. —Կովը՛ ոչխարը՝ եզը՝ եւ մաքին թանկագին են գիւղացւոյն (գիւղացին) համար. —Կը տեսնէ՞ք սա աշակերտները. անոնցմէ իւրաքանչիւրը գեղեցիկ գրքեր եւ պատկերներ առաւ. —Կարագը եւ սերը ²շատ կը ¹սիրեմ. Նոքա սննդարար են. —Վաճառականին որդին ²շատ կը ¹յարգեմ. զարմանալի խոհեմու-

(1) Սիրել Aimer եւ Ծառայել, Servir բայերն իրենցմէ ետքը եկող աներեւոյթէն առաջ à նախդիրը կ'ուզեն։

թիւն մը եւ քաղաքաւորութիւն մը ցոյց տուած է միշտ. — Աղջիկս եւ հարսս շատ բարի են. Նոքա միշտ աղքատաց կ'օգնեն. — Երբ ութը տարեկան էի, կարդալ եւ գրել չ'էի գիտեր։

## ԴԱՍ Զ.

Շատ անգամ կայ, կար, կան, կային ե՛մ՝ փոխանակ y avoirի Être բայով կը բացատրուին, որ միշտ եզակի կը մնայ, իսկ անէր բային ի՛նչ թիւ որ ալ ըլլայ։ Ինչ։ Աստուած մը կայ. Il est un Dieu. Մարդիկ «կան» որ... Il est des hommes qui...

## ՄԵՌԵԱԾ ԹՌՉՈՒՆՆ

Մարիամ²դառնապէս (à chaudes larmes) ¹կուլար։ «ինչո՞ւ կուլաս» հարցուց մայրը։ Մարիամ ձեռքը բացաւ եւ իւր մեռած թռչունին ցուցուց։ —«Խե՜ղճ թռչուն. բայց լինչ որ է (mais va!). մի՛ լար, սակէ աւելի գեղեցիկ թռչուն մը պիտի գնեմ վանդակիդ մէջ. —Ո՛հ, ոչ, ըսաւ աղջիկը, չ'կայ թռչուն մը որ երբէք մխիթարէ զիս, որովհետեւ խղճմտանք մը կ'աւելնայ (s'ajouter) վշտիս։ Օր մը... ո՛հ, եթէ գիտնայիր, մայրիկ. —Է՛, ի՞նչ (quoi donc?)

աղջիկս ։ —Օր մը ինծ չաքար տուիր Թռչնոյն համար . . . —Վ՞րջը . —Վերջը , մայրիկ , վերջը . . . չաքարը կերայ ։ »

Սիրելի բարեկամներս , երբէք մի՛ վշտացնէք ձեր ծնողքն , որպէս զի խղճմտանքն չ՛տանջէ ըզձեզ ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

[2]Երէկ եկեղեցւոյն դրան առջեւ մուրացկան մը [1]տեսայ որ դառնապէս կուլար. — [2]Մարդիկ [1]կան զորըս ամենափոքր ձախողութիւնը (le moindre malheur) կը յուսահատեցնէ. — [2]Ատենօք ութը տարեկան տղայ մը [1]կար որ շատ խելացի էր . — Եօթն իշխանաց կղզեաց մէջ շատ եղեւիններ կան . — Պէտք է որ ծնողացդ խորհրդոց հետեւիս (Սա. Նր) որպէս զի երջանիկ ըլլաս (Սա. Նր.) ։ — [2]Ատենօք չքեղ տուներ [1]կային այս փողոցին մէջ. —Կան մարդիկ որ չար են . կան մարդիկ որ բարի են. պէտք է չարերէն խորշիլ , պէտք է բարիներուն հետեւիլ։



## ԴԱՍ Է.

## ՔԱՂ

Մուրացկան մը կ՚ըսէր մարդու մը . «Մի՛ հարցնէք ինծ թէ ինչով կ՚ապրիմ. հարցուցէք ինծ թէ

ինչէ կը մնոնիմ։» —Ըսէք օրիորդ Մարիամին որ (que) կրակը մոխիրով (de . . .) գոցէ (couvrir). — Բարեկամս, հետեւեցէք օրինակիս եւ գոհ պիտի ըլլայք, որովհետեւ ես փորձառութիւն ունիմ. — Բարեկամներէս մէկուն տունը վեց տարեկան խե-լացի աղայ մը տեսայ. — Քանի՞ տարեկան էք. — Ցիսուն տարեկան եմ. —Տունը ինծ ծախող վաճա-ռականին տունը գացի այս առաւօտ. —Այս պար-տիզպանին ձին եւ կովը շատ սիրուն են. —Աշ-խարհիս (աշխարհս) մէջ չար եւ բարի մարդիկներ կան. Երանի անոր որ գիտէ չարերէն խորշիլ եւ բարիներուն հետեւիլ. —Այս առաւօտ չուկայ գա-ցի եւ գնեցի մէկ երկլեցեակ սուրճի սկահակ, տուփ մը թէյ, հինգ խահուէի տուփ, երեք չիչ գինի եւ երկու օխա շաքար. —Օգնութի՛ւն, օգնութի՛ւն, կը գոչէր խեղճ վիրաւորեալն ողբալի ձայնով մը. — Խնդրեմ, տուփ մը կարկին գնեցէք ինծ, երբ չուկայ երթայք. —Այս առաւօտ մեր դրացւոյն պարտէզը գա-ցի. ամեն տեսակ ծաղիկներով զարդարուած էր։



## ԴԱՍ Ը.

Երթալ ը être բայով կը բացատրուի, երբ խօսքը գացած եւ վերադարձածի վրայ է։ Օրի-նակք. Այս առաւօտ եկեղեցի գացի՞ք., Avez-

*vous été* ce matin à l'église ? (avez-vous été *և ոչ* êtes-vous allé. *ուղղակի եկեղեցիէն* վերադարձող *մէկու մը կրնայ հարցուիլ* եկեղեցի գացի՞ք)։ Եղբայրս թատրոն գնաց · *այս խօսքը կրնամք երկու կերպով թարգմանել, ըստ իմաստին։ Եթէ դեռ եղբայրս թատրոնն է, չէ վերադարձած, պէտք է ըսել* mon frère *est allé* au théâtre. *իսկ եթէ վերադարձած է*, mon frère *a été* au théâtre ։

*Երբ բայի մը* ընդունելութիւն անցեալը (participe passé) être *օժանդակով գործածուած ըլլայ՝ Տէր բայիին հետ* սեռով եւ թուով *կը համաձայնի ։ Ինչ ·* Իւր «մայրը մեռած է» · Sa *mère* est *morte* (morte եզակի իգական *դրուած՝ համաձայնեցնելու համար իւր տէր բայիին՝* mère*ին հետ։*) «կանայք մեկնած» էին · Les *femmes* étaient *parties*. (parties յոգնակի իգական *դրուած, համաձայնեցնելու համար իւր տէր բայիին՝* femmes *ին հետ*)։

*Նոյնպէս եթէ ըսել․ անցեալը առանց օժանդակի գործածուած ըլլայ՝ պարզ ածականի մը պէս իւր դոյականին կամ դերանուան հետ կը համաձայնի ։ Ինչ ·* կորսուած գրիչը· La plume *perdue*. Անցեալ տարի· L'année (*իգ*) passée.

## ԻՆՉՊԷՍ ԱՆՑՈՒՑԻ ՕՐԸ (la journée)

*Այս առաւօտ եղբօրս հետ եկեղեցի (տրական)*

գացի, հոն կային մէկ եպիսկոպոս եւ հինգ քահանայ, առաջնորդութենէն վերջը տուն (chez nous) վերադարձանք ։ Կէս աւուր ճաշէն (dîner) վերջը դեղեցիկ եւ ընդարձակ այգի մը (պարկ) գացինք, ուր կային շատ մը ծառեր եւ տունկեր ։ Պարտիզպանը կը հերկէր անդադար . Իւր կինը նստած էր իւր զաւակներով մեծ կաղնւոյ մը շուքին տակ (à l'ombre) եւ գիրք մը կը կարդայր բարձրաձայն (à haute voix)։ Տղայք լռութեամբ (en silence) մտիկ կ'ընէին։ Այս տեսարանը շատ հաճոյք պատճառեց մեզ , եւ միտք ունիմք այն այգին (պարկին) վերստին երթալ եկող շաբթու (la semaine prochaine)։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Երէկ թատրոն գացի՞ք , տիկին . —Ոչ, պարոն, չ'գացի (հոն չ'գացի) , որովհետեւ օդը գէշ էր, բայց եղբայրս գնաց (1) (հոն գնաց) քանի մը բարեկամներով . — Երէկ մայրս հօրեղբօրս տունը գնաց (2) . կ'ուզէի իւր սենեակը (օտակ.) մտնել, բայց գոցուած էր . —Ցեռանդն ու՞ր ընթրեցիք . տունը (chez vous) չ'էիք , կարծեմ . —Ոչ, տունը (chez moi) չ'էի. հօրաքրոջս տունը ընթրեցի, որ անցեալ շաբաթ Բարիզէն վերադարձաւ . — Եկէք, սա թթենւոյն շուքին տակ նստինք. այսօր շատ տաք կ'ընէ. —Բար-

(1) Գացած եւ վերադարձած է . — (2) Գնա վերադարձած չ'է .

ձրաձայն խօսողը ¹ո՞վ ²է ․ — Եղբայրնիդ (1) է (c'est) , կարծեմ. մինչ բարձրաձայն կը խօսի նա. իւր քոյրը՝ ընդհակառակը՝ որ տասը տարեկան է , լռութեամբ մանկ կ'ընէ. — Մի մոռնայք թէ (que) մարդիկ իրենց մահուընէ (մահը) վերջ պիտի դատուին



## ԴԱՍ Թ.

Յօդը tout , monsieur , madame , monseigneur բառերէն ետքը կը դրուի միշտ։ Ինչ. «Բոլոր» մարդիկ, *tous* **les** hommes. «պարոն» խորհրդական, *monsieur* **le** *conseiller*, «տիկին» տնօրէնուհին, *madame* **la** directrice, «գերապատիւ» արքեպիսկոպոսը, *monseigneur* **l**'archevêque ։

Տէրութեանց և գաւառներու անուանց վրայ առհասարակ յօդ կը դրուի . Ինչ . «Եւրոպա Ասիոյ», արեւմտեան կողմն է. **l**'*Europe* est à l'occident de l'*Asie* ։ — Երբ տեղւոյ մը բերքին վրայ խօսք ըլլայ՝ տեղւոյն անունք յօդ չ'առներ ։ Ինչ. «Եգիպտական» կտաւ , lin d'Egypte, Սպանիական ոսկի , or d'Espagne , ևլն ։

(1) Յիշեցէք թէ քաղաքավարութեան համար պէտք է ըսել պարոն եղբայրնիդ, տիկին մայրերնիդ ևլն, monsieur votre frère, madame votre mère ևլն ։

## ՍԱՄԱՐՔԱՆԴՑԻ (de Samarcande) ԴԵՐՁԱԿԸ

Սամարքանդցի դերձակ մը, որ գերեզմանատան մերձակայքը (aux environs) կը բնակէր, [6]իր [7]խանութին [5]մէջ [4]հողէ [3]աման [2]մը [1]ունէր, որուն մէջ պզտիկ կայծ մը կը նետէր ամեն անգամ որ [5]մեռած [4]մարմին [3]մը [2]թաղելու [1]կը տանէին (1), [1]եւ [5]իւրաքանչիւր [6]ամսոյ [4]վերջը (à la fin de), [3]կայծերը [2]կը համրէր. [4]մեռելոց [3]թիւը [2]գիտնալու [1]համար։ Վերջապէս [2]ինքն ալ (lui-même) [1]մեռաւ։ Քիչ ժամանակ (quelque temps) վերջը, մէկը որ անոր մեռնիլը (իր մահը) չ'էր գիտեր (ignorer), [2]խանութը [3]գոց [1]տեսնելով հարցուց թէ ի՞նչ (ce que) եղած էր (devenir)։ Դրացիներէն մին պատասխանեց. Դերձակը՝ միւսներուն պէս՝ ամանին մէջ ինկաւ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

[8]Երէկի [7]ժողովքին (ժողովքը) [6]մէջ [1]պարոն [2]Նախագահը [4]բոլոր [5]յօդուածները [3]քննեց.—Վանցի բժիշկ մը եկաւ այսօր մեր տունը եւ հարցուց թէ ո՞ւր կրնար գտնել պարոն հայրերնիդ. իրեն պատասխանեցի թէ տեսնել ուզած անձը Բարիզ մեկնած (2) է.—Պարոն տնօրէնը իւրաքանչիւր չաբաթոյ

(1) Թաղելու տանիլ, porter en terre.

(2) Մեկնիլ ի . . . partir pour . . .

վերջը զմեզ կը քննէ եւ աշխատասէր աշակերտ-ները կը վարձատրէ ու ծոյլերը կը պատժէ. — Եղ-բայրնիդ ո՞ւր է. — Թատրոն գնաց. ես ալ կ'ուզէի երթալ, բայց գլուխս կը ցաւի. — Եղբօրը մահ-ուանէն քիչ ժամանակ վերջը Պօրտօ մեկնեցաւ. — Պօրտօյի գինիները շատ համբաւաւոր են, այնպէս չէ՞. — Այո՛, բարեկամս, Գաղղիոյ գինիները, Իտա-լիոյ կտաւները, Տաճկաստանի բամպակները, Ռու-սիոյ մուշտակները յարգի եղած են միշտ. — Հայրս՝ մայրս եւ եղբայրս Լիոն մեկնեցան երէկ. ²երկու ³շաբաթէն (երկու շաբաթուան մէջ) ¹պիտի վերա-դառնան:



## ԴԱՍ Ժ.

Ֆրանսերէն բայերէն շատերը իրենց խնդիր եղող աներեւոյթէն առաջ այլ եւ այլ նախդիրներ կ'ուզեն, ոմանք **à**, ոմանք **de**, ելն: Ինչ. Պա-րել կը սիրէ՞ք. Aimez-vous **à** jouer ? Ձեզ կը խրա-տեմ աշխատիլ, Je vous conseille **de** travailler (1)

(1) Նոյնպէս շատ անգամ բայերն իրենցմէ ետ-քը եկող գոյականէն առաջ այլ եւ այլ նախդիրներ կ'ուզեն, որք միշտ չ'են համապատասխաներ հա-յերէնին: Ինչ. Մէկու մը, բանի մը «մօտենալ» S'approcher **de** quelqu'un, de quelque chose, ելն:

*Մասնաւոր կանոն մը չկայ գիտնալու համար թէ ո՛ր բայերը իրենց խնդիր եղող աներևոյթէն կամ դերանունէն առաջ նախդիր չեն ուզեր, որո՛նք* de *և որո՛նք* à *նախդիր կ՚ուզեն ։ Վարժութեամբ միայն կը սորվուի ։ Ուստի կը խրատենք զուսանողն որ գրքիս կցուած բառգրքուկին մէջ գտնուած բայերուն քով դրուած նախդիրներուն մեծ ուշադրութիւն ընէ ։*

## ԲԱՐԻ ԱՂՋԻԿՆ

*Քոյր իմ, կը տեսնե՞ս սա աղջիկն որ՝ խնձորենիոյն շուքին տակ նստած՝ գիրք մը կը կարդայ ուշադրութեամբ։ Բոլոր իւր ընկերուհիք զայն կը գգուեն իւր պարկեշտութեանը ու համեստութեանը համար ։ Չի կայ ուսուցիչ մը կամ ուսուցչուհի մը որ գոհ չ՚ըլլայ իրմէ. այնքան աշխատասէր է նա։* Երբ մենք *կը խաղամք զբօսանքի (զբօսանքը) ատեն* (pendant), Նա *մի* [4]*քանի* [5]*ընկերուհիներով* [1]*ժուռ կուգայ ·* [2]*կամ* [3]*կը նստի վարժարանին ընդարձակ պարտիզին մէջ, եւ* [5]*ուսմանց* [6]*ու* [7]*կըրթութեան* [4]*վրայ* (de . . .) [1]*կը խօսի* [3]*անոնց* [2]*հետ։ Ո՛հ, որքան* (que) *կը փափաքիմ իւր տարիքն ունենալ եւ իրեն չափ ուսեալ ըլլալ ։*

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Կարճատեսութիւնը եւ հեռատեսութիւնը [2]հաւասարապէս [3]հիւանդութիւններ [1]են ։ Կարճատեսք հեռուէն լաւ չ'են կրնար տեսնել, եւ հեռատեսք մօտէն լաւ չ'են կրնար տեսնել․ — Այս երեկոյ օդը գեղեցիկ է, քոյր իմ․ եթէ զբաղած չէք, դաշտին մէջ պտըտինք․ — Գրասեղանս կանաչ չուխայով ծածկեցի․ վասն զի սենեակիս պատերը պատկերներով պիտի զարդարեմ․ — [3]Երէկ [1]ո՞ւրկէ [2]կուգայիք, երբ ես [2]քոյրս [3]դպրոց (տրակ․) [1]կը տանէի․ — Քեռորդւոյս տունէն կուգայի, [1]որ [3]երկուշաբթի [4]Լոնտոն [2]պիտի մեկնի պարոն Ցակոբին հետ․ — Օրիորդ քոյրերնիդ [1]քանի՞ [2]տարեկան է․ — [5]Եկող [4]շաբաթու [2]տասը [3]տարեկան [1]պիտի ըլլայ․ — Օրը ի՞նչպէս անցուցիք․ — Առաւօտուն եկեղեցի գացի․ ճաշէն վերջը քանի մը բարեկամաց այցելութիւն տըւի․ — Պարել կը սիրէ՞ք․ — Եղբօրնուդ կարդալ չ'սովրեցուցի՞ք․ — Դադրեցէք լալէ, բարեկամս․ — Ձեզ կը խրատեմ աւելի (davantage) աշխատելու ։



## ԴԱՍ ԺԱ․

Ընդուն․ անցեալը, երբ **avoir** օժանդակով գործածուած ըլլայ՝ իր սեռ․ի խնդիր ըն

(complément direct) հետ սեռով եւ թուով կը համաձայնի, եթէ այս սեռի խնդիրը իրմէ առաջ գրուած է։ Եթէ ետքը գրուած ըլլայ՝ չ'համաձայնիր։ Ինչ. ինծի «տուած գրիչներդ» ծախեցի. J'ai *vendu* les *plumes* que vous m'avez *données*. (données իգական յոգնակի գրուած, համաձայնեցնելու համար իր սեռի խնդիրին՝ plumesին հետ, որ իրմէ առաջ գրուած է, և որ իգական յոգնակի է. բայց նոյն խօսքին մէջ՝ vendu, նոյնպէս ընդ. անցեալ, թէև avoir բայով գործածուած, սակայն չէ համաձայնած իր սեռի խնդիրին՝ plumesին հետ, որովհետեւ սեռի խնդիրը իրմէ ետքը գրուած է)։

## ՄԵՐ ՎԱՐԺԱՐԱՆԸ

Մեր վարժարանը ընդարձակ է. անիկա ունի ութը դասարան, ուր կան կաղնիէ նստարաններ եւ դրասեղաններ, սեւ գրատախտակներ, աշխարհացոյցներ եւլն։ [3]Գրատախտակին (գրատախտակը) [2]վրայ [1]կը գրենք կաւիճով։ Վարժարանը ունի նաեւ ընդարձակ եւ մաքուր սեղանատուն (réfectoire) մը, ուր կը ճաշենք։ Ես վեցերորդ կարգէն եմ. [1]կը սորվիմ Հայերէն, Տաճկերէն, Ֆրանսերէն եւ Անգլիերէն [2]լեզուները, Սրբազան Պատմութիւն, Թուաբանութիւն, Աշխարհագրութիւն,

*Բնական Պատմութիւն, Բնագիտութիւն եւ Բնալուծութիւն։ Ես ²շատ ¹կ'աշխատիմ եւ բոլոր դասատուներուն կը սիրեն զիս։ ²Վարժարանին ¹անօրէնը ⁸իւրաքանչիւր ⁹ամսոյ ⁷վերջը ⁶մրցանակ ⁵մը ⁴կուտայ ³ինձ։ Ո՜հ, որչափ կ'ուրախանան ծնողքս երբ զայն իրենց կը ցուցնեմ։*

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

*Եղբայրնիդ ընդունեցա՞ւ իրեն ղրկած նամակս (նամակը զոր իրեն ղրկեցի)։ — Այո, բարեկամս, ընդունեցաւ զայն։—Շարլըմանը, Թագաւոր Գաղղիոյ, յաճախ կ'այցելէր իւր հիմնած դպրոցներն (դպրոցներն զոր հիմնած էր)։ — Ի՞նչ եղան* (devenir) *այն վարդերն զորս ²առաւօտուն ¹քաղեցիք ձեր դրացւոյն պարտիզին մէջ։— Ջանանք եղբօրս տալ։ —Ռասինի մեզ կտակած գեղեցիկ ոտանաւորներն (գեղեցիկ ոտանաւորները զոր Ռասին մեզ կտակած է) եւ Ֆէնէլոնի մեզ ձգած ներդաշնակ արձակն զարդարած եւ հարստացուցած են մեր միտքն։—Երէկուան շուկայէն գնած փայտէ սնտուկներս (փայտէ սնտուկներն զորս երէկ գնեցի) կոտրեցան. զայնս ատաղձագործին ղրկեցի, որպէս զի զայնս նորոգէ եւ իշու կամ ոչխարի կաշիով ծածկէ զայնս. — Կը հաճի՞ք (պիտի ուզէ՞ք) ինձ տալ երէկուան գնած փղոսկրեայ գրիչնիդ (փղոսկրեայ գրիչն զոր գնեցիք երէկ)։ զայն հօրս պիտի ցուցնեմ որպէս զի հատ մը (անկէ մէկ հատ) գնէ ինձ համար։*



## ԴԱՍ ԺԲ.

Ֆրանսերէնի մէջ ածականները իրենց խնդիր եղող բառէն առաջ նախադրութիւն կ'ուզեն։ Ածականներէն ոմանք **à** նախադրութեամբ խնդիր կ'առնեն, ոմանք ալ **de** ով։ ինչ. Այս աշակերտը իւր դասերուն «ուշադիր» է. Cet élève est *attentif* **à** ses leçons. Այս մարդը գովեստից «արժանի» է. Cet homme est digne **d**'éloges, ևն։ — Վարժութեամբ կը սորվուի թէ այս ինչ ածականը ինչ նախդրիւ խնդիր կ'առնէ. ուստի բառգրքուկին մէջ գտնուած ածականներուն քովի նախադրութեանց ուշադրութիւն ընելու է։

Ուսանողք կը յիշեն անշուշտ թէ միայնը շատ անգամ Ֆրանսերէնի մէջ **ne . . . que** ով կը թարգմանուի։ ինչ. Մէկ մատիտ «միայն» ունիմ. Je *n*'ai *qu*'un crayon. «Միայն» տասը փարայ ունիմ. Je *n*'ai *que* dix paras.

### ԳԻՒՂԱՑԻՆԵՐՆ ԵՒ ԴԱՏԱՒՈՐՆ

Գիւղի մը դարբինը մարդ մը սպաննեց եւ կախուելու դատապարտուեցաւ։ Գլխաւոր գիւղա-

ցինները միացան եւ աղաչեցին դատաւորին (դդատաւորին) դարբինին ներել կամ գոնէ իւր պատիժն թեթեւցնել, որովհետեւ գիւղին պիտանի (nécessaire) էր, ուր միայն մէկ դարբին կար, առանց որոյ (sans qui) իրենց ձիերը չ'էին կրնար պայտուիլ, իրենց անիւները նորոգուիլ, եւլն: Դատաւորը ըսաւ. «[3]Այն ատեն [1]ի՞նչպէս [2]կրնամ արդարութիւնը տեղը տանիլ (remplir):» Հողագործ մը պատասխանեց. «Տէր (monsieur), գիւղին մէջ երկու սատայնանկ կայ, եւ այնչափ (si) պզտիկ գիւղի մը համար մէկ հատը (un seul) բաւական է. միւսը կախեցէք:»

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Քոյրս ուրախութեամբ լսէր, որովհետեւ գովեստից արժանի գործ մը ըրած էր. — Եղբայրնիդ կ'ըսէ թէ չատ դիւրին (*) է օտար լեզու մը սորվիլ. ես պատասխանեցի թէ՝ ընդհակառակը չատ դժուար (*) է օտար լեզու մը աղէկ սորվիլ. — Շատ ուրախ եմ ձեզ հանդիպելուս. կ'ուզեմ կարեւոր գործոյ (դործ) մը նկատմամբ ձեզ խորհուրդ հարցնել. — Կ'ըսեն թէ ձեր դրացին հարուստ է. —

---

(*) Դիւրին facile եւ դժուար difficile ածականները être բայով գործածուելով միադէմ բայ մը դարձած ատեն de նախդրիւ խնդիր կ'առնեն, այպա թէ ոչ àով խնդիր կ'առնեն:

Ոչ, սիրելի բարեկամս, ատենօք հարուստ էր, բայց հիմայ փոքրիկ տուն մը եւ խանութ մը միայն ունի.—Կարո՞ղ էք այս քարը վերցնելու (soulever). եօթանասուն օխա կը կշռէ.—Կը հաճի՞ք ինձ ըսել թէ ո՞ւր ծնած է հօրեղբայրնիդ, քանի՞ տարեկան է, ո՞ւր կը բնակի եւ քանի՞ զաւակ ունի.— Մեծաւ հաճութեամբ (avec grand plaisir). հօրեղբայրս, որ ի Բարիզ կը բնակի այժմ եւ բացակայ է իւր հայրենիքէն, ծնած է ի Մուշ. քառասուն եւ հինգ տարեկան է, երեք մանչ եւ երկու աղջիկ ունի. —Բժիշկը մեծ մօրս հիւանդութիւնը քննեց եւ ըսաւ թէ (que) դեղագործին տուած դեղերը խիստ օգտակար կրնան ըլլալ իւր հիւանդութեան։



## ԴԱՍ ԺԳ.

## ՔԱՂ

Այսօր ժամանակնիդ ի՞նչպէս անցուցիք.— Առաւօտուն եղբօրս հետ եկեղեցի գացի. կէս օրէն վերջը բարեկամներէս մէկուն տունը գացի, բայց բարեկամս տունը չ՚գտնելուս թատրոն (տրակ.) գացի.— Այս մարդուն մայրը եւ եղբայրը շատ բարի են. նոքա անցեալ տարի Բարիզ մեկնեցան եւ դեռ չ՚վերադարձան.— Մեր վարժարանի մրցանա-

կաքաչխութեան հանդիսին ներկայ էին (1) պարոն տնօրէնն, տիկին տնօրէնուհին, Ցակոբ Սրբազանն եւ բոլոր մեր բարեկամներն· — Ասիա Եւրոպայէ շատ (beaucoup) աւելի մեծ է. — Մանչէսդըր, Անգղիոյ ամենէն մեծ քաղաքներէն մին, նշանաւոր է իւր ձեռագործութեամբք (par ses . . .)· — Այս քաղաքին մերձակայքը շատ անտառներ կան. — Երէկ հինգ երկվեցեակ մատիտ եւ երկու տուփ գրիչ գնեցի, զորս ղրկեցի եղբօրս. — Ո՛րչափ քաջեր ըսպաննուեցան Վադըրլօի պատերազմին մէջ. պատմութիւնը զանոնք անմահացուցած է. — Ի՞նչ ունիք ուտելու համար. — Հաց եւ պանիր միայն ունիմք. — Միայն ա՞յս ունիք. — Այո, միայն այս ունիմք. — Պարոն տնօրէն, այս աշակերտները գովեստից արժանի են, որովհետեւ միշտ ուշադիր են իրենց դասերուն. միայն Ցակոբ կայ որ խաղը չափազանց կը սիրէ։



## ԴԱՍ ԺԴ.

Ֆրանսերէնի մէջ կը գործածուին օտար լեզուներէ առնուած խել մը բառեր։ Այս բառերը, ըստ ընդհանուր կանոնի, յոգնակիի մէջ

(1) Ներկայ ըլլալ (բանի մը), assister à . . .

Տ կ՚առնեն ։ ինչ. Un opéra, des opéraS. Un numéro, des numéroS.

Եթէ օտար բառը աղօթքի մը անուն է և կամ եթէ մի քանի բառերէ կազմուած է, յոգնակին մէջ անփոփոխ կը մնայ ։ ինչ. Un pater, տէրունական աղօթք մը, Հայր մեր մը, des pater. Un in-folio, միածալ գիրք մը, des in-folio.

## ՄԵՐ ԴՐԱՑԻՈՑՆ ԶԱՒԱԿՈՒՆՔԸ

Մեր դրացւոյն երկու մանչ և մէկ աղջիկ ունի։ Անդրանիկը, որ Յովսէփ կը կոչուի, տասնեւհինգ տարեկան է։ Նա շատ խելացի և բարի է, և միշտ կը խրատէ իւր կրտսեր եղբայրը աշխատելու։ Կրտսերը ինը տարեկան է. Նա ալ բարի է, բայց եղբօրը չափ խելացի չէ։ Աղջիկը, որ Մարիամ կը կոչուի, տասներկու տարեկան է. Նա համեստ և իւր ծնողաց հնազանդ է։ Ամեն մարդ (tout le monde) կը սիրէ զայն։ Իւր մայրը երէկ գեղեցիկ ընկուզենիէ դարան մը գնեց, որպէս զի իւր ձեռագործները հոն պահէ (Սառր. Ներկ.)։ Աղջիկը ուրախութեամբ իւր մօր ձեռքերը համբուրեց և խոստացաւ նմա միշտ աշխատասէր և առաքինի ըլլալ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Դեղագործի սխալումներն (quiproquo*) շատ վըտանգաւոր են. — Այս միածալ գրքերն վրիպակաց ցանկեր (errata*) ունին. — ³Ձեր ⁴մօրեղբայրը ¹ինչպէս ²կը կոչուի, պարոն. — Մօրեղբայրս Յովհաննէս կը կոչուի եւ քսաներկու տարեկան աշխատասէր եւ պարկեշտ երիտասարդ մ'է. — Ձեր բարեկամին նամակներն երկար յետագրութիւններ (post-scriptum*) ունին. — Օդը կը թնդար հանդիսականաց կեցցէներով (des bravo*). — Համրիչին մէջ հարիւր յիսուն փոքրիկ հատեր (avé*) եւ տասնեւհինգ մեծ հատեր (pater*) կան. — Յաղթութենէն վերջը թագաւորութեան բոլոր եկեղեցեաց մէջ Զքեզ, Աստուած, գովաբանեմքներ (Te deum*) երգեցին. — Առաքինի մարդիկ ամենէն կը յարգուին. մոլի անձինք, ընդհակառակը, ամենէն կ'անարգուին. — Մայրիկ, կը խնդրեմ, ինծի ձեռագործի տուփ մը գնեցէք որպէս զի ասեղներս, մկրատս եւ մատնոցս մէջը (հոն) պահեմ. — Շատ աղէկ, աղջիկս, կը խոստանամ հատ մը (անկէ հատ մը) գընել, եթէ դու ալ ինձ խոստանաս աշխատասէր ըլլալ:



(*) Quiproquo (քիբրօքօ), *errata, *post-scriptum (բօսքսքրիբդօմ), *bravo, *avé, *Te deum (դէ տէօմ), *pater լատիներէ առնուած բառեր:

## ԴԱՍ ԺԵ.

*Երբ երկու ածականներ* մէկ եւ նոյն *բառը յարաբերեն, հարկ չկայ յօդը կրկնելու ամեն ածականին առջեւ. ինչ.* Գայլերը «հեզ» եւ «անմեղ» որսը կը հալածէին. Les loups poursuivaient *la* douce et innocente proie.

*Բայց եթէ երկու ածականները տարբեր բառեր յարաբերեն, պէտք է յօդը* կրկնել. *ինչ.* «Հին» եւ «նոր» պատմութիւնը. *L'*histoire ancienne et *la* moderne.

## ԲԺՇԿՈՒԱԾ ՀԻՒԱՆԴՆ

*Գիւղացի մը բժիշկի մը գացած էր անհանգըստութեան մը վրայ խորհուրդ հարցնելու համար իրեն։ Բժիշկը հիւանդութիւնը քննելէ վերջ* (après avoir examiné) *դրասեղանին առջեւ նստաւ, դեղագիր մը գրեց, եւ անոր ըսաւ, զայն անոր տալով.— Վաղը առաւօտ ասիկա առէք։ Գիւղացին կարծելով թէ թուղթը նոյն իսկ* (même) *դեղն էր, տուն վերադարձաւ լի վստահութեամբ, եւ երկրորդ օրը* (le lendemain), *առաւօտուն կանուխ* (de très-bon matin) *զայն կլլեց, եւ կատարելապէս բժշկուած գտաւ ինքզինքն* (se trouver).

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Սողոմոնի Առակաց գիրքը լի է գեղեցիկ եւ օգտակար առածներով.—Երէկ քրոջս հետ կարդացի Երկու Աղաւնիներու սրտայոյզ եւ գեղեցիկ առակը.—Ջուրը այնքան թարմ է արոյրէ ամանի մը մէջ որքան ոսկեղէն սկահի մը մէջ.—Եթէ ճամբորդեմք, գեղեցիկ եւ պտղաբեր դաշտերը զմեզ կը ձանձրացնեն.—Տիկին մայրերնիդ ի՞նչպէս է (1).—Մայրս երկու շաբաթէ ի վեր անհանգիստ է. այսօր բժիշկը քննեց անոր հիւանդութիւնը եւ դեղագիր մը գրելէ վերջ՝ ըսաւ թէ (que) երկու օրէն կը բժշկուի (Ապ. անց.)—Հին եւ Նոր (moderne) Կելտացիք, որ Ֆրանսացիներն են, իրարու (se) կը նմանին միեւնոյն յատկութեամբք (par les . . .) եւ միեւնոյն թերութեամբք.—Գեղեցիկն եւ պտղաբերն Բրօվանս մեզ ճաշակ մը կուտայ այրեցեալ գօտւոյն արտադրութեանց վրայ.—Այս ծեր եւ քաջ զինուորը եօթանասուն տարեկան է.



## ԴԱՍ ԺԶ.

Շատ անգամ ֆրանսերէնի մէջ, կրկնութենէ խորշելու համար, արդէն յիշուած դոյակա-

(1) Ըլլալ (առողջութեան կողմանէ) se porter.

նի մը, ածականի մը, բայի մը և նոյն իսկ նախադասութեան մը տեղ le կը դրուի, որ անփոփոխ կը մնայ։ Ինչ. Չ'գիտէք ո՛րքան տխուր եմ եւ ո՛րքան պատճառ ունիմ «տխուր» ըլլալու. Vous ne savez que je suis triste et combien j'ai raison de l'être.—Տիկին, իտալացի՞ էք.—Այո՛, «իտալացի» եմ. Madame, êtes-vous Italienne ?—Oui, je *le* suis։

Բայց երբ դոյականէն առաջ յօդ դրուի, այն ատեն le կը փոխուի սեռով եւ թուով։ Ինչ. Դուք այն իտալացուհի՞ն էք որոյ կ'սպասեմք. — Այո, այն «իտալացուհին» եմ.—Etes-vous l'Italienne que nous attendons ? — Je *la* suis։

## ՊԷՏՔ Է ՏԿԱՐԻՆ ՕԳՆԵԼ.

Ահ, քոյր իմ, չ'գիտես ո՛րչափ ուրախ եմ այս երեկոյ, եւ ո՛րչափ իրաւունք ունիմ ուրախ ըլլալու։ Մտիկ ըրէ։ Այս առաւօտ դպրոց (տրակ.) գացած ատենս (en allant) խեղճ ծերունւոյ (ծերունի) մը հանդիպեցայ, որ գետին (à terre) ինկած՝ դառնապէս կուլար։ Իսկոյն անոր մօտեցայ եւ հարցուցի. Բարի ծերունի, ինչո՞ւ կուլայք, կրնա՞մ ձեզ օգնել։ Ծերունին պատասխանեց. «Բարի աղջիկս, խեղճ ծերունի մ'եմ եւ մուրալով կ'ապրիմ։ Այս առաւօտ եկեղեցի կ'երթայի, յանկարծ ծունկերս կքեցան եւ գետին ինկայ, վասն զի, աղջիկս,

վասն զի . . . » Զկրցաւ խօսքերը աւարտել եւ դարձեալ սկսաւ (se remettre à) հեկեկալու ։ Այս տեսարանը [3]բոլորովին (tout) [4]յուզած [2]էր [1]զիս ։ Խեղճ ծերունւոյն ձեռքէն (par la main) բռնեցի եւ վեր հանելով (relever) զայն՝ իրեն տունը իր նստուկը ։ Ծերունին յամրաքայլ (à pas lents) հեռացաւ , շնորհակալ ըլլալով ինձ , եւ իմաստութիւն խնդրելով յերկնից ինձ համար ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Նոքա որ ամէնուն բարեկամն են՝ մէկուն (ոչ մէկուն) բարեկամը չ'են.—Այս առաւօտ , երբ եկեղեցի կ'երթայի , զինուորական մը հանդիպեցայ որ ինձ հարցուց . Ներեցէք համարձակութեանս (liberté), կը հաճի՞ք ինձ ըսել թէ (եթէ) մա՞յր էք .— Կատարեալ պաղարիւնութեամբ մը պատասխանեցի. Այո, պարոն , մայր (զայն) եմ.—Կը հաճի՞ք ինձ ըսել թէ այս տան դռնապանուհի՞ն էք.—Ոչ , պարոն , դռնապանուհին (զայն) չ'եմ.—Եզը կը լեցնէ իր առաջին ստամոքսները որչափ որ (tout autant que . . .) կրնան լեցուիլ (զայն ըլլալ). —Եթէ սովորական է հաղուագիւտ բաներէն յուզուիլ , ինչո՞ւ այնքան (si) քիչ կը յուզուիմք (զայն եմք) առաքինութենէն . — Երկիրն , ի բնէ (naturellement) արգասաւոր , շատ աւելի (bien davantage) արգասաւոր (զայն) պիտի լինէր, եթէ աւելի լաւ (mieux)

*մշակուած ըլլար (էր).—Աշակերտներէն մին զիս ղըր-պարտած էր Պ. Տնօրէնին* (auprès de monsieur . . . ). *սա* (celui-ci) *տեսնելով որ դառնապէս կուլայի, ձեռքս իւր ձեռքին (իրենին) մէջ առաւ եւ ըսաւ. «Դուք չար չ'էք եւ չ'էք կրնար* (1) *չար (զայն) ըլլալ . — Այս երեկոյ, Թատրոն (տրակ.) գացած ատենս, գետինը փայլուն բան մը* (quelque chose de . . . ) *տեսայ. առի* (2) *զայն . ադամանդեայ մատնի մ'էր, զոր հարուստ տիկին մը կորուսած էր.—Տղայն սահեցաւ եւ գետինը ինկաւ . վերցուցէք զայն ։*



## ԴԱՍ Ժէ.

Անոր , անոնց՝ *դերանուն մը քով դրուած՝ (սեռականի իմաստով)* **en** *ով, նոյնպէս* անոր , անոնց՝ *բայի մը քով դրուած՝ (տրականի իմաստով)* **Y** *ով կը թարգմանուին սովորաբար , երբ իրենց յարաբերած բառը* անշունչ *ըլլայ ։ Ինչ.*

---

(1) *Բացասական խօսքերու մէջ* pouvoir , savoir, oser, cesser *բայերէն ետքը աներեւոյթ մը եկած ատենն՝ սովորաբար միայն* ne (*առանց* pas*-ի*) *կը դրուի ։*

(2) Գետնէն առնել, ramasser ։

Ծրարը դեռ չ'ղրկեցի , որովհետեւ դեռ «անոր» արժէքը չ'է վճարած, je n'ai pas encore envoyé le paquet, car il n'*en* a pas payé encore la valeur.—Բազուկս առէք եւ կրթնեցէք «անոր», prenez mon bras et appuyez-vous *y* :

En, y *չնչաւորներու վրայ խօսած ատեն նաեւ կընան գործածուիլ* : *Ինչ.* Հայրս Բարիզ է. «անկէ» նամակ մը առի, mon père est à Paris; j'*en* ai reçu (*կամ* j'ai reçu de lui) une lettre :

*Ուսանողք պէտք չ'է մոռնան թէ* **en** *կը գործածուի նաեւ խիստ շատ անգամ, արդէն յիշուած գոյական մը վերստին չ'կրկնելու համար* : *Ինչ.* Avez-vous du pain? — J'*en* ai. Հաց ունի՞ք.—Ունիմ :

## ԿԵՌՆԵԽՆ ԵՒ ԿԱՅԾՈՌԻԿՆ

*Կայծոռիկ մը կը փայլէր խոտին մէջ եւ կ'ըսէր հպարտութեամբ . «Միջատաց թագաւորն եմ. երկնքի վրայ փայլող աստղերն երկնի կայծոռիկներն են. եւ ես մարգագետնին աստղն եմ : »*

*Մօտակայ ծառի մը վրայ, կեռնեխ մը, դիպուածով* (par hasard [հազառ]) *արթնցաւ. անօթի էր, որովհետեւ դէշ* (mal) *ճաշած էր. « Ի՞նչ է այս*

(qu'est ceci ?) ըսել (1), տեսնելով միջատն որ ջուրին մէջ կը փայլէր. աղէկ կտոր մ'է (c'est)։» Եւ հպարտին վրայ յարձակելով զայն լափեց։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Երբ մեր երկրէն հեռանամք, կ'զգամք այն բըռնադատումը որ զմեզ անոր կը կապէ.—Ագահները իրենց հարստութիւնները այնքան կը զգուեն որ (2) միշտ անոնց վրայ կը մտածեն. — Քաղաքի ունի՞ք, տիկին.— Այո, տիկին, ունիմ. Կրնամ ձեզ տալ (ձեզ անկէ տալ), եթէ պէտք ունիք (անոր (3) պէտք ունիք). — Այս սենեակը շատ աղէկ եղաւ.

---

(1) Ուսանողք կը յիշեն անշուշտ թէ ըսել, գոչել, հարցնել, պատասխանել եւ ուրիշ անոնց նման բայեր՝ երբ միջանկեալ կերպով երկու ստորակէտներու մէջ կամ խօսքի մը վերջը գտնուին՝ հարցական ձեւով կը գործածուին. — (2) Որ՝ եթէ դերանուն ըլլայ՝ միշտ quiով, եթէ շաղկապ ըլլայ՝ queով կը թարգմանուի. — (3) Անոր՝ թէեւ տրականի խնդրով՝ սակայն en ով կը թարգմանուի, եթէ իր բայը ետեւէն de նախդիրով կ'ուզէ իր գոյականը, ինչպէս է avoir besoin բայը. ինչ. Avez-vous besoin *de* papier ?, թղթի պէտք ունի՞ք. — Ունիմ. j'*en* ai besoin.

եթէ կ'ուզէք, պատգամ մ'ալ աւելցուցէք անոր.
—Օդը այս գիշեր գեղեցիկ է. երկնից վրայ բնաւ ամպ չի կայ, աստղերը կը պլպլան.— Եթէ դիպուածով կօշկակարին (կօշկակարը) հանդիպիք, ըսէք իրեն որ երկու զոյգ կօշիկ բերէ քրոջս համար.—Ինծի հաց, պանիր եւ գաւաթ մը ջուր բերէք. շատ (մեծ) անօթի եմ (ունիմ). այսօր աղէկ չ'ճաշեցի.—Գիտէ՞ք թէ ուր է մեր դրացւոյն որդին. —Չ'եմ գիտեր. կ'ըսեն թէ Վիէննա է. երէկ իւր եղբօրը երկու զոյգ ձեռնոց եւ երեք երկվեցեակ գորշագոյն գուլպայ ղրկեց, բայց դեռ անկէ նամակ չեն ընդունած։



## ԴԱՍ ԺԸ.

Առ. կցեալ, կից ընդ գրոյս ci-joint, Ներփակեալ, ci-inclus, *ածականները երբ բայէ մը ետքը դրուած ըլլան և իրենցմէ ետքն ալ* անորոշ՝ *այսինքն առանց յօդի գոյական մը գտնուի*, անփոփոխ *կը մնան. ընդհակառակն կը համաձայնին՝ եթէ իրենցմէ ետքը* որոշեալ *գոյական մը գտնուի. ինչ.* Vous trouverez *ci-inclus* copie de l'acte (*մուրհակին պատճէնը*). — Vous trouverez *ci-incluse la* copie *կամ une* copie de l'acte.

*Գոյականներէն ոմանք կը գործածուին*

*երբեմն ածականաբար՝ գոյն ցուցնելու համար ։*
*Այս տեսակ ածականները միշտ* եզակի *կը մնան․* *ինչ․* Շագանակագոյն հագուստներ , des habits marron ։

*Ֆրանսերէնի մէջ շաբթու և ամսոյ օրերէն առաջ յօդ չ'գործածուիր ։ ինչ․* « Հինգշաբթի պիտի մեկնիմ եւ «ուրբաթ» պիտի վերադառնամ ․ je partirai *jeudi* et je reviendrai *vendredi* .

*Բայց եթէ ամէն շաբթուան մի և նոյն օրուան կամ ներկայ շաբաթէն ուրիշ շաբթու մը օրերուն վրայ խօսք ըլլայ՝ յօդ կը դրուի ։ ինչ․* Թղթաբերը «երկուշաբթի» օրերը կուգայ , le courrier arrive *le* lundi ․ «Կիւրակէ» օրը գրած էր ինծի , «հինգշաբթի» պատասխանեցի իրեն ․ il m'avait écrit *le* dimanche , je lui répondis *le* jeudi ։

## ՆԱՄԱԿ ԱՌ ԸՆԿԵՐ ՈՄՆ

17 *օգոստ․* 1887
*Իւսկիւտար*

*Սիրելի ընկերս ,*

[2]*Ներկայ* [3]*տոմսակաւս* ( par mon . . . ) [1]*կը խնդրեմ որ բարեհաճիք (կ'աղաչեմ ձեզ բարեհաճիլ) եղբօրս տալ* այն *գրքերը զորս ձեզ փոխ տուած էի ուրբաթ* օրը ։

[3]Յօժարակամ (1) [2]պիտի ձգէի [1]զայնս աւելի երկար ատեն ձեր քով, սիրելի ընկերս, եթէ եղբայրս անոնց պէտք չ'ունենար (չ'ունէր)։

Կից ընդ գրոյս ձեզ կը ղրկեմ Պէրպէրեանի «Մարդիկ ու Իրք»ը, զոր ինձմէ խնդրած էիք։ Կը յուսամ թէ մեծ հաճոյք պիտի զգայք (պիտի առնէք) անկէ։

Մնամ (je suis) անկեղծ բարեկամ ձեր

. . .

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Առկցեալ նամակն ձեզ կ'իմացնէ հօրաքրոջս գալուստը. — Այս վաճառականը լուագոյն ժապաւէններ կը ծախէ. կ'ուզէ՞ք անոնցմէ գնել. — Ոչ, լուագոյն ժապաւէններու պէտք չունիմ. եթէ չագանակագոյն չրջազգեստներ ունի, Տիկին անօրէնուհւոյն աղջկանց համար կը գնեմ (անոնցմէ կը գնեմ). — Յունուարը, Մարտը, Մայիսը, Յուլիսը, Օգոստոսը, Հոկտեմբերը եւ Դեկտեմբերը երեսուն եւ մէկ օրեր ունին, եւ Ապրիլը, Յունիսը, Սեպտեմբերը եւ Նոյեմբերը երեսուն օրեր ունին. — Տեսա՞ք այն ադամանդեայ մատանին զոր մեր դրացուհւոյն ծախեցի ուրբաթ օրը. հինգ Օսմանեան ոսկւոյ

---

(1) Դիտեցէք թէ մակբայները սովորաբար բայէն առջը կը դրուին։

(livre (1) turque) գնած էի զայն անցեալ տարի.— Եթէ առաջին յանձնարարագիրն (commande) կորսուած է, անկցեալ ձեզ կը յղեմ ուրիշ պատճէն մը։ Ներփակեալ պիտի գտնէք նաեւ յանձնարարութիւն մը բարեկամներէս մէկուն կողմանէ (de la part de. . .).—Պարոն կառավարչին կրտսեր աղջիկը բաց շագանակագոյն (châtain clair) մազեր ունի.— Յաջորդ օրը ձեզ սպասեցի, որովհետեւ երեքշաբթի ինծ ըսիք թէ հետեւեալ օրը զիս տեսնելու պիտի գայիք.—Ներկայ առաքակաւս կը խնդրեմ որ բարեհաճիք երկու զոյգ շագանակագոյն ձեռնոց ղրկել ինծ, [1]որոց արժէքը ներփակեալ [2]պիտի գտնէք. —Թղթաբերը չորեքշաբթի օրերը կուգայ եւ շաբաթ օրերը կը մեկնի։



## ԴԱՍ ԺԹ.

## ՔԱՂ

Այս օրէրանները հանդիսականներուն կեցցէներուն (կեցցէները) արժանացան. — Նշանաւոր ըղ Քեզ, Աստուած, գովաբանեմքներ, Կայր առ խա-

(1) Livre գիրք նշանակութեամբ արական է, իսկ ոսկի կամ լիտր նշանակութեամբ իգական է։

չիններ (Stabat, ըսդապադ) եւ հոգեհանգստեան աղօթքներ (Requiem, ռեքիւեմ) կան, յօրինեալ (composer) նշանաւոր հեղինակներէ (par . . .). — Աշակերտները քննելէ վերջ՝ Գ. Տնօրէնը վարձատրեց զանոնք՝ որ արժանի էին վարձատրութեան. — Առաւօտուն կանուխ անտառ գացի եւ խոշոր ծառի մը տակ նստայ. — Այսօր հին եւ նոր աշխարհը ծածկուած են ամենուրեք երկաթուղիներով. — Պիւֆոն պարզած (déployer) է իւր արգաւանդ եւ փայլուն հանճարին բոլոր հնարքներին (ressource) ձիուն նկարագրութեան մէջ, ձիուն՝ որ մարդուն ազնիւ եւ օգտակար ընկերն է. — Օրիորդ քոյրերնիդ ի՞նչպէս է, պարոն. — Տիկին, Հա՞յ էք. — Այո, պարոն, Հայ եմ. — Տիկին, կ'ուզէի գիտնալ թէ դուք այն Հա՞յն էք որ երէկ զիս տեսնել ուզած էր. — Ոչ, օրիորդ, ես այն չ'եմ. — Վեր հանեցէք սա խեղճ տղայն, որ գետին ինկած՝ դառնապէս կու լայ. — Կը հաճի՞ք այս գիրքը ինձ փոխ տալ. կ'ուզեմ անոր պատկերները դիտել. — Յօժարակամ. անոր պէտք չ'ունիմ. — Այս փայտը շատ կարճ է. պէտք է ուրիշ կտոր մը կցել անոր. — Հաց ունի՞ք. — Ունիմ. — Գինի ալ ունի՞ք. — Չ'ունիմ. — Առկցեալ ձեզ կը ղրկեմ այն շագանակագոյն ձեռնոցները զորս խնդրած էիք ձեր տոմսակաւն. — Շատ անգամ պզտիկ հատորի մը մէջ աւելի խելք կայ քան թէ խոշոր միածալներու մէջ. — Ստակ ունէ՞ք. — Չ'ունէինք. — Տիկին անօրէնուհին քանի մը օրերէ ի վեր

*անձանձրոյթ է. հինգշաբթի օրը գլուխը կը ցաւէր, ուրբաթ օրը սիրտը կը ցաւէր, շաբաթ օրը աչքերը եւ ականջները կը ցաւէին, այսօր ատամունքը կը ցաւի ։*



## ԴԱՍ Ի.

*Թուական ածականները երբեք յոգնակիի նշան չեն առներ ։ Միայն* **vingt** *և* **cent** *թւականները կան որ յոգնակիի նշան կ'առնեն, երբ իրենցմէ առաջ ուրիշ թուական մը գտնուի որ զիրենք կը բազմապատկէ. ինչ.* «Ութսուն» մարդ, quatre-vingts hommes. Երեք հարիւր ձի, trois cents chevaux. *—Բայց եթէ ետեւնուն ուրիշ թուական մ'ալ գտնուի, և կամ* դասական *թւականի մտքով գործածուած ըլլան՝ դարձեալ յոգնակիի նշան չեն առներ ։ ինչ.* «Ութսուն եւ մէկ» մարդ, quatre-vingt-un hommes. «Երեք հարիւր տասը» ձի, trois cent dix chevaux. «Ութսուներորդ» էջ, page quatre-vingt. «Ութը հարիւր» տարին, l'an huit cent ։

## ԱՐՋ

[2]*Շատ տեսակ* (plusieurs espèces de . . .) [3]*արջեր* [1]*կան, ինչպէս սեւ արջ* (*արջը*), *թուխ արջ* (*արջը*) *եւ ճերմակ արջ* (*արջը*) ։

Սև արջը զօրաւոր կենդանի մ'է, ծածկուած սեւ փայլուն մազով (poil) եւ շատ սովորական է Հիւսիսային Ամերիկայի մէջ։ Կ'ըսեն թէ միայն (ne . . . que) բոյսերով կը սնանի, բայց անոնցմէ ոմանք որ յԵւրոպա (1) բերուած են՝ նախապատուութիւն ցոյց տուած են մսին համար։ [4]Աշնան (աշուն) [3]մէջ (en) [2]պարարտանալէ (աներև. անց.) [1]վերջ՝ այս կենդանիները իրենց (2) որջերը (տրակ.) կը քաշուին, եւ [4]վեց [5]եօթը (six ou sept) [6]շաբաթ [2]բնաւ [3]սնունդ [1]չեն ուտեր։

Ճերմակ արջը, կամ Գրէօնլանտայի արջը, երկայն գլուխ մը եւ վիզ մը ունի։ Իր անդամները ահագին մեծութիւն մը եւ զօրութիւն մը ունին։ Իր մարմինը ընդհանրապէս տասներեք ոտք (treize pieds de . . .) երկայնութիւն ունի։ Ճերմակ արջը փոկերով (de . . .) եւ կէտաձկանց դիակներով (de . . .) կը սնանի։

---

(1) Յիշեցէք թէ ի . . . յ . . . Երկրի անուանց առջեւ en ով, եւ քաղքի, գիւղի, ելն անուանց առջեւ àով պէտք է թարգմանել։

(2) Յիշեցէք թէ leurը այն ատեն միայն ծայրը s կ'առնէ երբ իր քովի բառը յոգնակի ըլլայ, ինչպէս է վերը։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Վօլթէր մեռած է ութսուն եւ չորս տարեկան (à . . . ans), Նեւտոն՝ ութսուն եւ հինգ տարեկան, Ֆոնդընէլ՝ իննսուն եւ ինը տարեկան, եւ Թէնսա՝ ութսուն տարեկան.—Սոկրատ մեռաւ չորս հարիւր տարին, այսինքն Յիսուսի Քրիստոսի ծննդենէն չորս հարիւր տարի առաջ.—Անմիտ մը իմացած ըլլալով որ ագռաւը երկու հարիւր տարիէն աւելի կ'ապրէր, հատ մը գնեց փորձը ընելու համար (pour en faire l'épreuve). — Շատ տեսակ սունկեր կան. կան (անոնցմէ կան) որ թունաւոր են. — Ձմրան մէջ լեռները ձիւնով ծածկուած կ'ըլլան (են). —Պաղեստինէն վերադարձին (au retour de . . .), Սուրբ Լուդովիկոս Երեք-հարիւրներու (տասն եւ հինգ քսաններու) անկարանոցը (hospice, ouբիս) հիմնեց երեք հարիւր կոյր ազնուականներու (gentils-hommes) համար։



## ԴԱՍ ԻԱ.

Հայերէնի մէջ բայերուն ծայրը ու մասնիկը կ'աւելցնենք յաճախ պարտք մը, պէտք մը ցուցընելու համար։ Ինչ. Երթալու եմ (պէտք է որ երթամ), գրելու ես (պէտք է որ գրես), եւն։ Ֆրանսերէ-

նի մէջ՝ բայերուն ծայրի այս ուն կը բացատրուի գլխաւոր բայէն առաջ devoir, falloir և այս նշանակութեամբ ուրիշ բայեր դնելով․ ինչ․ Երթալու եմ, je *dois* aller կամ *il faut* que j'aille. կամ il me *faut* aller.. Գրելու ես, vous *devez* écrire կամ il *faut* que vous écriviez կամ il vous *faut* écrire, ևլն։

## ԽՈՍՏՈՎԱՆՈՂՆ

«Խոստովանեցա՞ր ամեն ինչ» ըսաւ յարգելի եկեղեցական մը խոստովանողի մը․ — «Ո՛չ, յարեց վերջինը (celui-ci), «ուրիշ մեղք մ'ալ (encore) ունիմ. ժամացոյց մը գողցայ, կ'ուզէ՞ք զայն ընդունիլ» .—«Ո՛ս, ըսաւ թշնամանեալ քահանայն, «ինչպէս կը համարձակիս թշնամանել զիս եւ սուրբ պաշտօնս. Ժամացոյցը անմիջապէս իւր տիրոջ(1) վերադարձուր. — [2]Արդէն [3]վերադարձուցի [1]զայն, բայց նա մերժեց. ուստի կը խնդրեմ որ (je vous prie donc de...) զայն ընդունիք (ընդունիլ)․ — «Դադրէ զիս թշնամանելէ», ըսաւ քահանայն, «նորէն վերադարձնելու ես զայն իրեն». —«Ես ալ այդպէս ըրի (c'est ce que j'ai fait), յարեց գողը, «բայց նա կ'ըսէ թէ զայն չ'ընդունիր» . — «Ուրեմն (en ce cas-là), ըսաւ սուրբ եկեղեցականը,

---

(1) Տէր (որ եւ է առարկայի) propriétaire։

«կրնամ թողութիւն տալ ձեզ. բայց կը պատուիրեմ ձեզ այլ եւս (plus) գողութիւն չ'ընել (1)։»

Խոստովանողին մեկնելէն քիչ մը վերջը՝ (bientôt après) քահանայն տեսաւ (s'apercevoir) որ իւր ժամացոյցը գողցուած էր ճանկէ մը ուրկէ (auquel) կախած էր զայն, եւ այն ատեն միայն (ne ... que) հասկցաւ որ գողը մատուցած էր զայն իրեն եւ թէ ինքն մերժած էր զայն։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Գնելու էք գիրան մը որ ութսուն կամ ութսունեւհինգ ոտք երկայնութիւն ունենայ.— Պէտք է պատուիրէք այս տղոց որ գողութիւն չ'ընեն (գողութիւն չ'ընել).—Իննսուն սուրճի գաւաթ ղրկելու էք, որովհետեւ ութսուն հատ չ'են բաւեր.—Վաղը առաւօտ ձեր եղբօր նամակ մը գրելու էք, եւ կէս օրին մեր տունը գալու էք.—Երէկ ձեր բարեկամին ղրկելու էիք իրեն համար գնած մատենադարանիդ.—Միսը կեռէն կախելու էիք, որպէս զի կատուն զայն չ'ուտէր.—Ես ալ այդպէս ըրի.—Եղբայրս չահաւոր պաշտօն մը ստացաւ.— Այսօր շուկայ երթալու եմ երկու երկվեցեակ թաշկինակ, չորս զոյգ ձեռնոց եւ երկու տուփ կարկլին գնելու համար.—Աշխատելու էք, որպէս զի երջանիկ ըլլայք. ծոյլ ըլլալու չ'էք, եթէ դժբաղդ ըլլալ չ'էք ուզեր։

---

(1) Ընել, գործել (յանցանք) commettre։

## ԴԱՍ ԻԲ.

Plus, աւելի, mieux, լաւագոյն, moins, նուազ մակբայներուն քով գտնուող յօդը կը փոխուի՝ երբ է բաղդատութիւն մը ցուցնել ուզուի. Ինչ. Բոլոր կրթութիւններէն, սիրտը կազմող կրթութիւնը «ամենէն» կատարեալն է. De toutes les éducations, celle qui forme le cœur est **la** *plus parfaite*.

Յօդը անփոփոխ կը մնայ երբ է իր ամենէն բարձրաստիճանին հասած վիճակ մը միայն ցուցնել ուզուի՝ առանց բաղդատութեան. Ինչ. Ծաղիկները առաւօտուն «ամենէն» գեղեցիկ կ'երեւան. C'est le matin que les fleurs paraissent **le** *plus belles*.

Յօդը անփոփոխ կը մնայ նաեւ plus, mieux moins-ի առջեւ, երբ այս բառերը առանձին կամ իրենցմէ ետքը մակբայով մը գործածուած ըլլան. Ինչ. Բոլոր այս տիկիններէն՝ ձեր մայրը «ամենէն աւելի» եւ «ամենէն աւելի փափկութեամբ» կուտայ. De toutes ces dames, votre mère est celle qui donne **le** plus, et **le** *plus délicatement*.

## ՆԱՄԱԿ ԱՌ ԸՆԿԵՐ ՈՄՆ

10 սեպտ. 1887
Պէշիկթաշ

Սիրելիդ իմ Հէնրիկոս,

Երէկ տխուր տեսարանի մը ներկայ գտնուեցայ. Մեր դրացուհին խեղճ այրի մ'է, մայր երեք

զաւակաց , որոց անդրանիկը ինը տարեկան է ։ Այս խեղճ կինը , այնքան (aussi) ծեր որքան (que) աշխատասէր , այնքան աղքատ որքան բարի , առջին երկար տարինէ ի վեր կուրծքի հիւանդութենէ կը տառապէր ։ Երէկ խեղճ կինը հոգին փչեց հանդարտաբար . իւր վերջին խօսքերն եղած էին . «Վա՜յ ձեզ , խեղճ տղայքս , ո՞վ պիտի խնամէ զձեզ ձեր մօր մահուընէ վերջ ։» Խեղճ մանկունքն չէին հասկընար մեծութիւնն (étendue) կորուստեան զոր ըրած էին . եւ սակայն , կարծես նախազգացմամբ (par pressentiment) , կուլային , կը հեկեկային իրենց մօր մահուան անկողնոյն վրայ . . . ։ Այս տողերը գըրածատեննիս (en écrivant) մի քանի արցունք ինկան աչերէս , սիրելիդ իմ Հենրիկոս ։ Ստուգիւ , ո՞րքան դժուարին է զրկուած ըլլալ ծնողքէ ։

Ցաւոյն ծայր (extrêmement) յուզեալ եմ , եւ անկարող նամակս վերջացնելու ։ Հանգստեան պէտք ունիմ ։ [3]Ընդհուպ այս խեղճ տղայց վիճակին վրայ [4]լուրեր [2]պիտի տամ [1]ձեզ ։

Մնամ ձերդ
(Tout à vous)

. . .

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

[1]Եղբայրս ջուրերուն ամենէն ցած տեղերը (այն տեղերուն մէջ ուր ջուրերը ամենէն ցած են) [2]կը սի-

րէ [3]լողալ, որովհետեւ [1]կը վախնայ Ջուրերուն (1) ամենէն բարձր եղած տեղերը [2]լողալու.—Մեծ փիլիսոփայ մ'ըսած է. ամենէն քաղցր վայելքներն անոնք են որ յոյսը չ'են սպառեր. — Իրեն ամենէն աւելի հաճելի եղող տարիկայները անոնք են որոց ձեւը հարթ է. — Մեր աշխարհագրութեան դասատուն չորեքշաբթի օրը մեզ ըսաւ թէ բոլոր մոլորակներէն լուսինը երկրին ամենէն մօտ (rapproché de...) եղողն է.—Նոքա որ ուրիշներէն նուազ կուլան ամենէն նուազ տրտմեալներն (affligé) չ'են միշտ. — Երէկուան թատերական ներկայացման ներկայ գըտնուեցա՞ք. ամենէն գեղեցիկն գտայ զայն. — Այս երեք տղայներէն ամենէն աշխատասէրը [1]ո՞րն [2]է.— Ամենէն աշխատասէրը իւր դասատուին հետ խօսողն է. տասնեւվեց տարեկան է.— Քիչ առենէն դուք խակ (vous-même) պիտի զգայք մեծութիւնն կորըստեան զոր ըրած էք պարապ (oisivement) անցընելով ձեր մանկութեան ժամերն:



## ԴԱՍ ԻԳ.

Ուսանողք կը յիշեն անշուշտ թէ Ֆըրանսացիք, շատ անգամ, թէ՛ խօսակցութեան

(1) Ջուրերուն բառը մի՛ կրկնէք. յարմար դերանուամբն բացատրեցէք զայն:

և թէ՝ գրութեանց մէջ, քիչ մը ետքը ըլլալիք բան մը ցուցնելու համար aller բային Սահմ. ներկայն և Անկատարը կը գործածեն, որ կը դրուին գլխաւոր բային Աներևոյթէն առաջ, փոխանակ նոյն բային Ապառնին և Թէականը գործածելու : ինչ. Պիտի տեսնէք, Vous *allez* voir. Մեկնելու վրայ էր, il *allait* partir :

Մերկ, nu, կէս, demi, ի բաց առեալ, excepté, ենթադրելով, supposé *բառերը իրենց գոյականէն առաջ դրուած ատեննին անփոփոխ կը մնան, իսկ վերջը դրուած ատեննին ըստ կանոնի միւս ածականներուն պէս կը համաձայնին : ինչ.* Գլուխը «բաց», *nu*-tête *կամ* tête *nu***e**. ի բաց առեալ մի քանի անձինք, *excepté* certaines personnes *կամ* certaines personnes *excepté***es** :

Feu, մեռած, հանգուցեալ, վախճանեալ *ածականն ալ անփոփոխ կը մնայ եթէ գոյականէն* անմիջապէս *առաջ դրուած չ'է : իսկ եթէ իր գոյականէն* անմիջապէս *առաջ դրուած է, անոր հետ կը համաձայնի : ինչ.* «Մեռած» թագուհին, *feu* la reine *կամ* la *feu***e** reine, *ևն* :

## ՓԻՂԸ ԵՒ ԴԵՐՁԱԿԸ

[3]Հնդիկ [2]դերձակ [1]մը իւր խանութին մէջ գեղեցիկ հագուստներ շինելու [5]զբաղած [4]էր։ Փիղ մը՝ մերձակայքը գտնուող ճահիճէն անցնելով (traversant le marais qui . . .) [2]իւր [3]պատիճը դերձակին խանութին պատուհանին (տրակ.) [1]դրաւ առանց վնաս մը (quelque mal) ընել ուզելու։ Դերձակը, պարզապէս չարութեան համար (par simple malice), պատիճը ասեղովը ծակեց։ Ասոր վրայ, փիղը անմիջապէս պատիճը ետ՝ քաշեց (retirer) եւ դէպի ճահիճը ուղղեց (diriger) իւր քայլերը։ Դերձակին ըրածը անգթութիւն էր, եւ պիտի տեսնէք թէ ինչպէս պատժուեցաւ։ [1]Փիղը, իւր պատիճին եւ բերնին մէջ մեծ [3]քանակութեամբ (une grande quantité de . . .) [4]ջուր [2]առնելով ընդհուպ վերստին (1) երեւցաւ խանութին պատուհանին առջեւ, [1]եւ բոլոր ջուրը դերձակին վրայ [2]պարպելով, աղէկ մը (joliment) թրջեց զայն, անոր շինած գեղեցիկ հագուստները ապականեց եւ, ասոնցմէ զատ (de plus), դերձակին իւր դրացիներուն ծաղր ու ծանակին ենթակայ եղաւ (être exposé à . . .)։

(1) Բայերուն վերստին նշանակութիւնը տալու համար Ֆրանսերէն բայերուն սկիզբը **re** կ'աւելցուի սովորաբար։ Ինչ. Երեւիլ, paraître, վերստին երեւիլ, *re*paraître.

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Անձնօք ուխտաւորք բոկոտն եւ գլուխնին բաց կը ճամբորդէին. այսօր միայն (ne ... que) մուրացկաններն կան որ բոկոտն կը քալեն. — Ի բաց առեալ աղահութիւնը, բոլոր կիրքերը տարիքին հետ կը մարին. — Այսօր կենդանաբանութեան ուսուցիչնիս ինձ հարցուց. կրնա՞յք ինձ ըսել, տղայս, թէ որո՞նք (quel) են ձուածին կենդանիներն։ Պատասխանեցի. ձուածին կենդանիներն են՝ բոլոր թռչուններն, ի բաց առեալ չղջիկն. բոլոր ձուկերն, ի բաց առեալ կէտաձուկն. բոլոր սողուններն, իմն ի բաց առեալ. — [10]Լուդովիկոս ԺԶ. եւ [11]Լուդովիկոս ԺԷ. [8]հանդուցեալ [9]Թագաւորներուն [7]համար [3][illegible]սաւոր [2]պաշտօն (service) [1]մը [4]տե-[illegible]ւնեցաւ [6]Նօդր-Տամի [5]մէջ (à Notre-Dame) հազար ութը հարիւր տասն եւ չորս, մայիս տասն եւ չորսին (տասն եւ չորսը). — Քրոջս յանձնարարած գիրքերը գնեցի՞ք. — Ոչ, պարոն, դեռ զանոնք չգնեցի. երկու ժամէն զայնս պիտի գնեմ, եւ ժամը տասն եւ մէկին ձեր քրոջ պիտի ղրկեմ զանոնք. — [1]Տիկին, [2]վարժեցուցէք (1) [3]ձեր զաւակներն ամառ եւ ձմեռ, ցերեկ եւ գիշեր, միշտ գլուխնին բաց (tête ...) [4]կենալու (demeurer)։

---

(1) Վարժեցնել, accoutumer (ներգործ. բայ) աներեւոյթ խնդիրէն առաջ **à** կ'ուզէ. accoutumer սովորութիւն ունենալ (չէզոք բայ) աներեւոյթ խնդիրէն առաջ **de** կ'ուզէ։

## ԴԱՍ ԻԴ.

*փոխադարձ բայերուն մէջ* être *բայը* avoir *բայի տեղ դրուած է. ինչ.* Ils se **sont** *écrit* *դրը-ուած* ils **ont** *écrit* à eux*-ի տեղ, ևլն. Ուստի փո-խադարձ բայերուն ընդ. անցեալը* avoir *օժան-դակով խոնարհելոյ ընդ. անցեալի կանոնին կը հետևի (տես էջ* 20).

Բնութեամբ (1) (essentiellement) *փոխադարձ ե-ղող բայերուն ընդ. անցեալը* տերբային *հետ կը համաձայնի. ինչ.* *Elle* s'est *repentie*, զղջաց. *ils* se sont *écriés*, գոչեցին, *ևլն.—Միայն* s'arroger,

---

(1) Բնութեամբ *փոխադարձ կը կոչուին այն փոխադարձները՝ որոնք միշտ se ով կը գործածուին.* ինչ. se repentir, զղջալ, s'enfuir, փախչիլ, *ևլն.* (repentir, enfuir *բայեր չ'կան*). Ա*յս տեսակ փոխա-դարձները այնքան բազմաթիւ չ'են.*

Իսկ *այն փոխադարձները որոնք առանց* se *ի գործածուելով՝ նշանակութիւն մը կ'ունենան, կը կոչուին* պատահաբար *փոխադարձ, ինչպէս են փո-խադարձ բայերուն մեծ մասը.* Օր. se promener, պտըտիլ, se vanter, պարծենալ, *ևլն.* (promener, vanter *բայեր ալ կան*).

յինքն կորզել, յափշտակել *բայը կայ՝ որ թէև բնութեամբ փոխադարձ*, *այլ* պատահաբար *փոխադարձ եղող բայերուն ընդ. անցեալին կանոնին կը հետևի*, *այսինքն* avoir *օժանդակով խոնարհեալ ընդ. անցեալի կանոնին*։

*Ընկերք թէ* պատահաբար (accidentellement) *փոխադարձ բայերուն ընդ. անցեալը* avoir *օժանդակով խոնարհեալ ընդ. անցեալի կանոնին կը հետևին ինչ.* Այն «նուէրները» զոր իրարու ըրին, les *présents* qu'ils se sont *faits*. իրարու շատ «նամակներ» գրեցին, ils se sont *écrit* plusieurs *lettres*։ — *Պատահաբար փոխադարձներուն մէջէն* s'apercevoir de, նշմարել, տեսնել, հասկնալ, s'attendre de, սպասել, յուսալ, se douter de, տարակուսիլ, se plaindre de, գանգատիլ, se prévaloir de, օգուտ քաղել; se saisir de, բռնել. յուզուիլ, se servir de, գործածել, se taire լռել *բայերուն ընդ. անցեալը* բնութեամբ *փոխադարձ եղող բայերուն ընդ. անցեալի կանոնին կը հետևին*։ *ինչ.* Ils se sont *aperçus*, elles se sont *plaintes*, ils se sont *saisis*, *ևլն*։

## ՓԻՂ

[1]*Փիղը* [5]*բոլոր* [6]*չորքոտանեաց* [3]*ոչ միայն* (non seulement) [4]*ամենէն մեծն* [2]*է*, *այլ և* (mais en-

core) ամենէն զօրաւորն ։ Վայրենի վիճակի մէջ (à) կ'ապրի Ափրիկէի եւ Ասիոյ մէջ ։ Երբ փիղերու խումբեր քալեն , կարծես անտառը (անտառը կը թուի) իրենց առջեւ տակ կը դողայ (դողալ)։ [6]Իրենց ճամբուն՝ [5]վրայ [4]գտնուող [3]ծառերուն [2]ճիւղերը [1]կ'առնեն կը տանին (1) , որոցմով (dont) կը սնանին , եւ եթէ մշակեալ տեղեր մտնեն, երկրագործութեան աշխատութիւններն ընդհանուր կ'աներեւութանան ։

Անգամ մը որ փիղը ընտանենայ (անգամ մը փիղը ընտանեցած , apprivoisé) , բոլոր կենդանեաց ամենէն ազնիւն եւ հնազանդն կ'ըլլայ (devenir)։ Իւր տէրն տիրոջն համար՝ նշանաւոր է , [1]եւ անոր (զայն) ծառայելու եւ հնազանդելու համար միայն (ne . . . que) [2]կ'ապրի [3]այլ եւս (plus)։ Քիչ ժամանակի մէջ (en) ծնրադրել կը սորվի իւր տէրն ընդունելու համար , եւ կը զգուէ զանոնք զորս կը ճանչնայ ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Այն երիտասարդները որոնք եռանդեամբ ինքզինքնին աշխատութեան տուած են , ինքզինքնուն (se) երջանիկ օրեր պատրաստած են.— Որչափ կառավարութիւններ իրարու (se) յաջորդած են Ֆրան-

(1) Առնել տանիլ , emporter .

տալ մէջ վաթսուն տարիներէ (տարիներ) ի վեր.— Ուրբաթ աւուր հրդեհը հարուստները աղքատացուց. շատեր որ հարուստ քնացած էին՝ աղքատ արթնցան.—Նաւարկութեամբ (par la . . .) է (c'est) որ Անգղիացիք հարստացան եւ Հնդկաստանի վաճառականութեան տիրացան.—Պօղոս եւ Յովհաննէս զիրար չի մոռցան բնաւ պարապուրդից միջոցին (pendant les vacances). իրարու շատ նամակներ գրեցին եւ ճշդապահութեամբ իրարու պատասխանեցին.—Խեղճ կինը այնքան բարկացած էր որ ինքզինքը խղդել կ'ուզէր.—Դիտուած է (on a remarqué) թէ այն մարդիկ որ գինիէն ժուժկալած են մինչեւ իրենց քսաներորդ տարին, միւսներէն աւելի զօրաւոր կազմուածք մ'ունին.— Եօթնեւտասաներորդ դարուն մէջ (à) Հոլանտացիք յափշտակած էին (s'arroger) համեմանաց վաճառականութեան մենավաճառութիւնը.—Սուրբ Գիրքը կ'ըսէ թէ երկիրը լռեց ի ներկայութեան (en présence de . . .) Աղէքսանդրի։



## ԴԱՍ ԻԵ.

## ՔԱՂ

Այն գրիչները զորս (dont) այս առաւօտ գործածեցի կոտրուեր են.—Մայրս առաւօտուն կանուխ

*անտառին մէջ պտըտած էր հինգշաբթի* օրը. —*Այս ձիավաճառը* (*ձիներու վաճառականը*) *քանի՞ ձի ունի.* —*Երեք հարիւր քսան ձի, ութսուն եւ մէկ էշ, յի-նըսուն մտրուկ եւ վեց հարիւր ջորի ունի.* —*Քանի՞երորդ էջը բանալու եմ.* —*Ութսուներորդ էջը. ոչ, կը սխալիմ, երկու հարիւրերորդ էջը բանալու էք.* —*Բոլոր ծաղիկներէն ամենէն աւելի սիրածնիդ ո՞րն է.* —*Վարդն է* (c'est) *. վարդը ամենէն աւելի կը սիրեմ.* —*Շուշանը չ'է՞ք սիրեր.* — *Ոչ, շուշանը ամենէն նուազ սիրածս է.* — *Եղբայրնիդ Բարիզ մեկնելու* (1) *վրայ էր երբ աս նամակը ընդունեց.* —*Սպասեցէք քիչ մը. գեղեցիկ տետրոցներ* (album(2), ալպօմ) *պիտի ցուցնեմ.* —*Ներեցէք ինձ, չ'եմ կըրնար սպասել, մեկնելու եմ. ի տեսութիւն.* —*Ի տեսութիւն, բարեկամս, բարեւ ըրէք տունը.* — *Գըլխուս վրայ* (je n'y manquerai pas). —*Բոկոտն մի՛ կենաք մարմարիոնին վրայ.* — *Գլուխնիդ բաց դուրս մի՛ ելնէք. պիտի անձրեւէ.* — *Մեռած մօրաքրոջս կ'ըսէր թէ ամենէն հարուստներն միշտ ամենէն երջանիկներն չ'են.* —*Լատին լեզուն եւ յունարէն լեզուն երկու լեզուներ են որք երկար ատեն խօսուած* (se parler) *են, եւ որք այլ եւս չ'են խօսուիր.* —*Պարոնայք, չորեքշաբթի* օրը *ինչ բանով* (de quoi) *զբաղեցայք.* —*Երկու ժամ շարունակաբար*

---

(1) Մեկնիլ ի . . . partir pour . . .

(2) Album *լատիներէ առնուած*.

խօսելէ վերջ լռեցին.— Ոստիկանութիւնը բռնեց (se saisir de) այն գողերը՝ զորս ութսուն օրէ ի վեր կը հալածէր.— Այն պաշտօնը զոր այս մարդը յինքն կորզեց՝ աղքատ մարդու մը սահմանեալ էր.— Եղբայրնիդ ո՞ւր է.— Եկեղեցի գնաց. այսօր հանդիսաւոր պաշտօն մը տեղի պիտի ունենայ հանգուցեալ կոմսուհւոյն համար.— Այս երիտասարդը շատ կը սիրեմ. որովհետեւ ոչ միայն խելացի է, այլ եւ աշխատասէր է, մինչդեռ իւր եղբայրը աշխարհիս ամենէն ծոյլ մարդն է։



## ԴԱՍ ԻԶ.

Ուսանողք կը յիշեն անշուշտ թէ մեր ացնել, եցնել միջնաւորող կամ տալ բայով չինուած (կարդացնել, լուացնել, բերել տալ եւլն.) բայերը Ֆրանսերէնի մէջ շատ անգամ faire ով կը կազմուին, որ գլխաւոր բային աներեւոյթէն առաջ կը դրուի. խոնարհման մէջ միայն faireը կը խոնարհի, եւ քովի բայը անփոփոխ կը մնայ. Ինչ. կը կարդացնեմ. je *fais* lire. գրել տուաւ, il a *fait* écrire, եւլն.

Quand, lorsque, երբ, aussitôt que, անմիջապէս որ . . . պէս, à peine, հազիւ, եւ ասոնց նման ժա-

*մանակ ցուցնող մակբայէ մը ետքը դրուած բա-յը երբ հայերէնի մէջ* կատարեալ *դրուած ըլլայ՝ ֆրանսերէնի մէջ սովորաբար* անցեալ յառաջա-գոյն (passé antérieur) *կը դրուի ինչ.* «Երբ» գործս «լմնցուցի», ճամբայ ելայ, quand *կամ* lorsque j'*eus terminé* mon ouvrage, je me mis en route։

## ՈՒՂՂԱՄՏՈՒԹԻՒՆ

*Խիստ աղքատ մարդ մը քսակ մը գտաւ որ հարիւր ոսկի* (pièce d'or) *կը պարունակէր։ Այս ստակը իմս* (à moi) *չ'է, ըսաւ իւրովի* (se dit-il à lui-même). *անոր տէրը փնտռեմք։*

*Անմիջապէս հրապարակել կուտայ թէ կրնային իրեն դիմել ոսկւով լեցուն քսակ մը պահանջելու համար։ Զայն կորսնցնողը եկաւ զինքը գտնել։ Երբ աղքատը հաստատեց թէ անոր* (1) *տէրն էր, քը-սակը անոր տուաւ։ Քսակին տէրը, ուրախու-թեամբ եւ երախտագիտութեամբ լի՝ կ'աղաչէ ա-նոր* (*զայն*) *ընդունիլ քանի ոսկի իբր ապացոյց իւր երախտագիտութեան։ Աղքատը զայն կը մերժէ։ Տասը ոսկի*(2) *կուտայ, դարձեալ* (encore) *կը մեր-ժէ զայնս։ Վերջապէս քսակին տէրը քսակը կ'առ-*

---

(1) Անոր՝ *այսինքն* քսակին.— (2) Ոսկի *բա-ռը մի՛ կրկնէք. յարմար դերանուամբն բացատրե-ցէք զայն։*

նէ եւ անոր կը նետէ . պահեցէք զայն , կ'ըսէ ա-
նոր . քանի որ բան մը ընդունիլ չ'էք ուզեր , բան
մը չ'կորուսի ։ Աղքատը զայն չի վիրաւորելու (offenser) համար , վերջապէս ոսկի մը առաւ , զորս
անմիջապէս տուաւ խեղճ թշուառներու որ անկէ.
(par là) կ'անցնէին ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Այսօր եղբօրս ութը փրանք տուի որպէս զի քրոջս համար դարան մը շինել տայ (Ստոր. Ներկ). —Երբ հայրս Բարիզէն վերադարձաւ , գեղեցիկ պատկեր մը նկարել տուաւ մեր գիւղի նկարչին.— Նամակը գրելուս պէս՝ (Ստոր. անց.) զայն իւր հասցէին ղրկել տուի.—Հազիւ (1) տունէն դուրս ելած էի , անձրեւել սկսաւ . — Որո՞ւ դիմելու եմ այս պաշտօնը ստանալու համար . — Երբ նամակը գրել տայք (Ապ. անց.) , պահարանի մը մէջ դնել տուէք զայն , յետոյ կնքել տուէք զայն եւ ինձ ղրկեցէք . —Այս տղայք գանգատեցան իրենց ծնողաց թէ ինչու իրենց գրքերը Լոնտոնէն բերել (գալ) չէին տուած ։



(1) A peine , aussi եւ ուրիշ քանի մը այս տեսակ մակբայներէ ետքը եկող բայը սովորաբար հարցական ձեւով կը դրուի ։ Ինչ. «Հազիւ» մեկնած էի , à peine étais-je parti .

## ԴԱՍ ԻԷ.

*Հայերէն կ՚ըսեմք* «այնչափ» տկար է որ չ՚կըրճար քալել, «այնչափ» հպարտ է որ զիջանիլ չ՚ուզեր, *ևլն. այս և այս տեսակ խօսքերուն մէջ գտնուող* այնչափ ... որ *ըն ֆրանսերէնի մէջ* **trop** ... **pour***ով կը բացատրուի։ Վերի խօսքերը թարգմանենք.* Il est *trop* faible *pour* marcher, il est *trop* fier *pour* céder.

### ՆԱՄԱԿ ԱՌ ԸՆԿԵՐ ՈՄՆ

**1887** *օգոստ.* **23**

*Օրթաքէօյ*

*Սիրելի ընկերս,*

[1]*Ստացայ ներկայ ամսոյս տասնեւեօթը թուականաւ* (datée de dix-sept courant) [2]*նամակդ, որով* (par laquelle *կամ* dont) *ինձ կ՚աղաչէիք ձեր եղբօր տալ այն գրքերը՝* [1]*զոր* [5]*ինձ* [6]*փոխ տալու* [3]*մեծ* [4]*բարութիւնն* [2]*ունեցած էիք։*

*Դրկեցի զայնս ձեր եղբօր առանց վայրկեան մը կորսնցնելու, որովհետեւ արդէն չարաչար գործածած էի ձեր բարեկամութիւնը, խիստ երկար ատեն քովս* (chez moi) *պահելով զայնս. բայց,*

վստահ եմ, դուք այնչափ բարեսիրտ էք որ զիս չ'պիտի մեղադրէք այս մասին (en)։

Մեծապէս շնորհակալ եմ ձեզ (je vous suis obligé de . . .) այն նոր գրքին համար զոր ինծի ղրկած էիք. կը յուսամ թէ մեծ. հաճոյք պիտի զգամ (պիտի առնեմ) զայն կարդալով։ [1]Կը խոստանամ երկու ամիսէն [3]զայն [2]ձեզ [4]վերադարձնել։

Մնամ միշտ քոյդ

. . .

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Կը փափաքէի ձեր եղբօրմէն փոխ առնել իւր Լիդրէի բառագիրքը. կը կարծէ՞ք որ խնդիրս ընդունի (accueillir). — Անշուշտ. կրնայք վստահ ըլլալ որ յօժարակամ պիտի տայ ձեզ այդ գիրքը. այնչափ բարի է որ իւր բարեկամաց խնդիրը չ'մերժեր (չափազանց բարի է նա մերժելու համար . . .). —Ներկայ ամսոյս հինգ Թուականաւ նամակ մը ըստացայ Պ. Ցակոբէն, որով ինծի կ'իմացնէր մեր մտերիմ բարեկամներէն միոյն մահը. — Այնչափ հիւանդ էի որ չ'էի կրնար (չափազանց հիւանդ էի կարենալու համար) պատասխանել այն հրաւէրին որով (dont) զիս պատուած էիք. — Խեղճ կինը մի՛ մեղադրէք. այնչափ յուզուած էր որ ձեր հարցմանց չէր կրնար պատասխանել. — Այնչափ յոգնած

եմ որ չ'եմ կրնար քալել մինչեւ թատրոն. կառք (տրակ.) մը հեծնեմք.—Այս սենեակը այնչափ պըղտիկ է որ քսան հոգի (անձ) չ'կրնար առնել (tenir). —Մեծապէս շնորհակալ եմ ձեր հօրեղբօր այն խորհուրդներուն համար զոր ինձ տուաւ. ես այնչափ անփորձ էի որ չ'պիտի կարենայի գործին մէջէն ելնել (me tirer d'affaires) առանց իւր խորհրդոց:



## ԴԱՍ ԻԸ.

Ֆրանսերէնի մէջ բառեր կան որոց սեռը՝ ըստ իմաստին՝ կը փոխուի. ահա այդ կարգի բառերուն գլխաւորները:

**aigle** երբ արծիւ նշանակէ՝ արական է. երբ պատերազմական դրօշակ կամ մատակ արծիւ նշանակէ՝ իգական է:

**couple** երբ պարզապէս երկու հատ, զոյգ նշանակէ՝ իգական է: Երբ նոյն զգացմամբ միացեալ երկու անձինք, ամուլք, լծակիցք, նշանակէ՝ արական է: ինչ. **un** *couple* d'amis, **un** *couple* de fripons. — **une** *couple* d'œufs (ա'էօ):

**enfant**, երբ պզտիկ մանչ նշանակէ՝ ա-

րական է . *երբ* պզտիկ աղջիկ *նշանակէ*՝ իգական է ։

**hymne**(*իմն*) *երբ* պատերազմական երգ *նը-շանակէ*՝ արական է . *երբ* եկեղեցական երգ , շարական *նշանակէ*՝ իգական է ։

## ԽՐՋԱՆԿՈՒԹԻՒՆ ԵՒ ԴԺԲԱՂԴՈՒԹԻՒՆ

*Երկու բարեկամներ ,* [1]*որ* [5]*երկար ատենէ* [4]*ի վեր* [2]*զիրար* [3]*չ'էին տեսած , օր մը պատահմամբ իրարու* (se) *հանդիպեցան ։ — Ի՞նչպէս էք , ըսաւ մին . — «Բաւական աղէկ» , պատասխանեց միւսն , տարիէ մը ի վեր ամուսնացած եմ . — Ահա բարի լուր մը . — Ոչ շատ բարի . որովհետեւ կինս ցասկոտ եւ չար է . — Ցաւալի բան է* (voilà qui est fâcheux) . — *Չ'եմ կարծեր . որովհետեւ երկու հազար ոսկի օժիտ բերաւ* (apporter) . — *Լաւ . մխիթարանք մ'է այդ* (c'est) . — *Ոչ շատ . որովհետեւ այդ ստակովը բազմաթիւ* (un grand nombre de . . .) *ոչխարներ գնեցի , որոնք ամէնքն ալ* (tous) *քոսախտէ* (tac) *մեռան* (périr) . — *Ցաւալի բան . — Ոչ այնքան* (si) *ցաւալի որքան կը կարծէք . որովհետեւ անոնց մորթերը ծախեցի երկու հազար հարիւր ոսկւոյ . — Ուրեմն վնասնիդ հաներ* (1) *էք . — Բնաւ* (du tout) , *որովհետեւ տունս եւ բոլոր ստակս ոչնչացան կը-*

(1) վնասը հանել , se dédommager.

բակէն (par le feu)·— Աւա՜ղ, սոսկալի դժբաղդութիւն մ'է այդ (c'est là)·—Ոչ այնքան սոսկալի, հաւատա ինձ (ma foi), որովհետեւ կինս եւ տունս միասին այրեցան ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Կ'ըսեն թէ սեւ արծիւը բոլոր արծիւներուն ամենէն գեղեցիկն եւ ամենէն քաջն է·—Այս պզտիկ աղջիկը լքեալ որբ մ'է․ պէտք է պաշտպանել զայն·—Ամենէն ներդաշնակ պատերազմական երգերն Յոյն բանաստեղծներու պատերազմական երգերն (1) են·—Լատին եկեղեցւոյն մէջ բազմաթիւ (nombreux) շարականներ կան, յօրինուած նշանաւոր հեղինակներէ· — Երկու աղաւնի բաւական չ'են վեց հոգւոյ ճաշին համար·—Տամօն եւ Պիդիաս երկու բարեկամներ էին·— Հռովմայական դրօշակներն որ ոսկիէ կամ արծաթեայ էին, յաճախ յաղթական կը վերադառնային·— Ինչպէս բոլոր մայրերն, մատակ արծիւն ալ է սիրով լի իւր ձագերուն համար·—Ո՜, բարեկամս, ինչպէս էք․ երկար ատեն կայ որ զիրար չ'էինք տեսած·—Շատ երջանիկ պիտի ըլլայի՝ եթէ աշխարհներս քաղաքէն մեծած չ'ըլլայի ։



(1) Մի՛ կրկնէք պատերազմական երգերն․ յարմար դերանուամբն բացատրեցէք այս բառերն ։

## ԴԱՍ ԻԹ․

**Amour**, սէր, **délice**, հաճոյք *և* **orgue**, երգեհոն *բառերն* եզակիի *մէջ* արական և յոգնակիի *մէջ* իգական *են* ։

**Gens** անձ *բառը* իգական *կ'ուզէ իրմէ անմիջապէս* առաջ *գտնուող ածականներն*, *և* արական *կ'ուզէ իրմէ ետքը գտնուող ածականները* ։

**pâque** Պասէք (*Հրէից*) *նշանակութեամբ* իգական *է և փոքր գրով կը գրուի* ։

**Pâque** *կամ* **Paques** Զատիկ *նշանակութեամբ* արական *է և միշտ գլխագրով կը գրուի* ։ — *Ցոգնակիի մէջ* Pâques իգական *է* Pâques fleuries, Ծաղկազարդ, Pâques closes, Նոր կիւրակէ *բառերուն մէջ* ։

## ՈՒՂՏ

*Ուղտը աւազուտ՝ անջրդի եւ արեւակէզ գաւառներու մէջ ապրելու սահմանեալ է ։ Իւր բարձրութիւնը գրեթէ* (d'environ) *վեց ոտք է, եւ իւր մարմինը ծածկուած է թուխ կամ շագանակագոյն սանեւով մը ։ Իւր ոտքերը շինուած են աւազներուն*

մէջ քալելու համար ։ Քիչ սնունդով կը գոհանայ , եւ մինչեւ ութը օր առանց խմելու կրնայ մնալ։ Արաբացիք ուղտը իբր (comme) Երկնից մէկ նուէրը կը համարին (regarder) ։ Ստուգիւ ոչինչ աւելի օգտակար է իրենց համար քան այս կենդանին ։ Իւր կաթովը եւ մսովը կը սնանին , եւ իւր ստեւը հագուստ կ'ընծայէ իրենց . ամենէն ծանր բեռները կը տեղափոխէ եւ տարօրինակ արագութեամբ մը անապատէն կ'անցնի (traverse le désert) ։ [1]Ոմանք [4]իրաւամբ (avec raison) [3]կոչեն [2]զայն անապատին նաւը։ Ուղտը երկու ստամոքս ունի , որոց միոյն մէջ (dans l'un desquels) կրնայ ջուր պահել շատ օրեր։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Ի Ֆրանսա բերուած առաջին երգեհոնները նուիրուեցան Բէբէն ըլ Պրէֆի Հարուն էլ Րաշիտ խալիֆայէն կողմանէ (par le calife)·—Գրեթէ բնաւ (guère) յաւիտենական տարփանք չ'կան . [3]միայն [2]աստուածային [1]սէրը չ'վերջանար . — Խորովեալ սագերն երբեմնի (d'autrefois) Ֆրանսացւոց ամենէն մեծ հեշտութիւններն կը կազմէին (կ'ընէին) . — Կը ցաւիմ (plaindre) խել մը (une infinité de) անձանց (անձեր) վրայ . դատարկապորտ եւ անգործ (désœuvré) անձանց, ծերունի անկար անձանց, դըժբաղդ անձանց վրայ զոր անբաղդութիւնը անդադար կը հալածէ. — Հրէայք ամեն տարի կը տօնէին Պա-

*ունին եօթն օր.—Քրոջս աղջիկը սիրուն պզտիկ տը-ղայ մ'է. Յառաջիկայ Զատկին եօթը տարեկան պիտի ըլլայ.—Երանի* այն *ծեր անձանց (անձերն) որք աղէկ ապրած են.—Յառաջիկայ Ծաղկազար-դին կամ Նոր կիւրակէին երկու հատ դիւրատար երգիոններ պիտի գնեմ.—Աղէկ մարդ* (1) *մը կը հա-մարուի ընդհանրապէս, բայց չ'եմ գիտեր* թէ *ինչ է իր արժանիքը.—Այս* [3]*արտէն* [1]*պէտք չ'է* [2]*անցնիլ։*

---

## ԴԱՍ Լ.

*Յատուկ անունները երբեմն յոգնակի կ'ըլ-լան, սակայն յոգնակիի նշան չեն առներ. ինչ.* Երկու «Քօրնէյլները» Րուէնի ծնած են, les deux *Corneille* sont nés à Rouen։

*Բայց եթէ յատուկ անունները հասարակ անուանց պէս գործածուին, այսինքն ոչ թէ բուն այն մարդերը, այլ անոնց նման անհատ-ներ ցուցնել ուզուի, այն ատեն յատուկ անուն-ները յոգնակիի նշան կ'առնեն. ինչ.* «Ֆէնէլօն-

---

(1) Un homme bon *կը նշանակէ* «բարի, աղէկ» մարդ մը. *իսկ* un bon homme, «բարեմիտ, պար-զամիտ» մարդ մը։

ներքը», «Պօսիւէները» հազուագիւտ են, les *Fénélons*, les *Bossuets* sont rares. (*այսինքն՝ Ֆէնէլօնի* պէս գրագէտք, *Պօսիւէի* պէս ատենաբանք։)

Aïeul *յոգնակիի մէջ* **aïeux** *կ՚ըլլայ՝* նախնիք *նշանակութեամբ*։ — Aïeul մեծ հայր *նշանակութեամբ՝ յոգնակիի մէջ* **aïeuls** *կ՚ըլլայ*։

*Ի բնէ անփոփոխ բառերն՝ մակբայ, նախադրութիւն ևն՝ կրնան յոգնակի գործածուիլ, բայց յոգնակիի նշան երբէք չ՚են կրնար առնել։*

## ԼՈՒԴՈՎԻԿՈՍ ԺԱ· ԵՒ ԱՍՏՂԱԳԷՏՆ

*Աստղագէտ մը ըսած էր Լուդովիկոս ԺԱ.ի թէ իւր յարգած տիկիններէն մին ութն օրէն պիտի մեռնէր։ Ստուգիւ, այդ տիկինն ութը օրէն մեռաւ։ Թագաւորը աստղագէտը բերել տուաւ իւր առջեւ եւ պատուիրեց իւր ծառայներուն զայն պատուհանէն* (par la fenêtre) *վար նետել, երբ զինինք կանչէր* (*Թէակ. անց.*)։ *Թագաւորը աստղագէտն տեսնելուն պէս՝* (aussitôt que . . .) *ըսաւ.* «*Դուք որ ապագայն այնքան ճշդիւ կը գուշակէք, ըսէք ինձ, ո՞րչափ ժամանակ ունիք ապրելու։*» *Աստղագէտը պատասխանեց.* «*Տէր արքայ* (sire), *Ձեր վեհափառութենէն* (*Ձեր վեհափառութիւնը*) *ճիշդ երեք օր առաջ պիտի մեռնիմ։*» — *Թագաւորը չ՚փութաց իւր ծառայները կանչել տալու։*

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Եթէ հնութիւնը իւր Աղեքսանդրները եւ իւր Կեսարները ունեցած է, Ֆրանսան իւր Շարլըմաններները եւ իւր Նաբոլէոնները ունեցած է. — Մեր նախնիք հացը խոռոչաւոր ծառերու մէջ չաղուելու սովորութիւն ունէին. — Հոմերոսները, Վիրգիլէոսները, Ռասինները, Ֆէնէլոնները, Միլտոնները կը հրապուրեն զաշխարհ իրենց հանճարով. — Երբերը, ովերը, ինչերը կը չուարեցնէին (étourdir) ըզ պարոն նախագահն, որ կը ջանար ժողովը հանդարտեցնել. — Հայերը շատ Ալիշաններ, Բաֆֆիներ չ'են հաշուեր: Նոքա ունեցած են իրենց Հիւրմիւզները. — Իմ երկու մեծ հայրերս կը սիրեն այն տղայները որ աշխատիլ եւ սովրիլ կը սիրեն. — Գողը ո՞ւրկէ (par où) մտեր է. պատուհանէ՞ն թէ (կամ) դռնէն. — Պատուհանէն մտած ըլլալու է, որովհետեւ ապակին կոտրած էր. — Ֆրանսացիք իրաւամբ կը պարծենան երկու Քօռնէյլներուն վրայ, ինչպէս Հայերը կը պարծենան երկու Հիւրմիւզներուն վրայ. — Ինչուները, եթէները, ոչերը ամեն կողմերէն կը տեղային (pleuvoir):



## ԴԱՍ ԼԱ·

## ՔԱՂ

*Հօրեղբօրմէս ամսոյս ութը թուականաւ նամակ մը ստացայ, որով ինձ կ'աղաչէր իրեն համար երկու տուզինա չափաւորակագոյն եւ մանիշակագոյն զուլպայ գնել. — Գրիչս այնչափ տկար է որ չի կրնար լիուլի արտայայտել* այն *երախտագիտութիւնն զոր կ'զգամ առ* (envers) *ձեզ.— Բարիզի Սէն-Սիւլբիս եկեղեցւոյն համար շինուած* (construire) *երգեհոնները հիանալի են.— Շարականներ կան որք խիստ սրտառուչ են.— Ինչ անպիտան* (vilain) *անձեր ընտրած էք ձեր ընկերութեան համար. — Նախնեաց փառքը որոր ազնուութեան (ազնուութիւնը) տեղը չ'բռներ* (1).— *Իմ երկու հաւերն ութսուն ձուք ածեցին. —Երկու Բասքէնները հաւասար չէին տաղանդով* (en . . .) .— *Պատմութիւնը աւելի Ցիցերոններ կը հաշուէ քան թէ Տրայիանոսներ.—Զոյգ մը երգեհոններ գնել տուի որք շատ ներդաշնակ էին.— Սոկրատները, Նեւտոնները խորապէս կրօնաւոր մարդիկ էին.— Ինչպէս անցնելու է այս ճահիճէն. — Կօշիկներնիդ եւ զուլպաներնիդ հանելու էք. — Այս դէպքը երկնից մէկ պատիժը կը համարիմ. — Տղայք յաճախ կը շուարեցնեն իրենց ինչուներով։*

---

(1) Տեղը բռնել, remplacer.

## ԴԱՍ ԼԲ.

Բարդ բառեր (noms composés) *կը կոչուին անունք՝ որք քանի մը բառերու միաւորութեամբ կազմուած են ։ ինչ.* Ատամնաքոր , cure-dents . ծիրանիգօտի , arc-en-ciel ։

*Բարդ բառի մը կազմութեան մէջ կրնան մտնել* գոյական , ածական , բայ , նախադրութիւն *և* մակբայ ։

*Բարդ բառի մը մասերէն միայն* գոյականներն *ու* ածականներն *յոգնակիի նշան կրնան առնել։*

*Երբ բարդ բառը երկու գոյականներէ կազմուած ըլլայ՝ որոնք նախադրութեամբ մը միացած ըլլան իրարու , միայն* առաջին *գոյականը յոգնակիի նշան կրնայ առնել. Օրինակք.* Un chou-fleur , ընդաւոր կաղամբ , des chou*x*-fleur*s* (*երկու գոյականներէ կազմուած՝ առանց նախդրի*). — Un arc-*en*-ciel , ծիրանիգօտի , des arc*s*-en-ciel (*երկու գոյականներէ՝ նախդրիւ միացած*). — Un coffre-fort, հաստարկղ , des coffre*s*-fort*s* (*գոյականէ մը և ածականէ մը կազմուած*). — Un avant-coureur , կարապետ , des avant-coureur*s* (*նախդիրէ մը և գոյականէ մը կազմուած*). — Un passe-partout ,

բազմաքաց բանալի, des passe-partout (*բայց մի և նախադիրէ մի կազմուած*).—Un tire-bouchon, խցահան, des tire-bouchons (*բայց մի եւ դոյականէ մի կազմուած*։

## ՆԱՄԱԿ ԱՌ ԸՆԿԵՐ ՈՄՆ

5 *սեպտ.* 1887
Վան

*Սիրելի ընկերս,*

*Ամսոյս երեք թուականաւ նամակդ առայ. ի՜նչ մեծ սփոփանք ինծ համար։ Կարդացի զայն ծայրէ ի ծայր* (d'un bout à l'autre). *ամէն մէկ տողին մէջ սրտիդ անկեղծութիւնը՝ կը փայլէր. ամէն մէկ նախադասութիւն՝ հրապուրիչ բանաստեղծութիւն մ'էր։ Շնորհակալ եմ, սիրելի բարեկամս, նամակացդ համար* (de). *Նոքա ամենէն աւելի կ'ամոքեն* այն *ձանձրոյթն զոր կ'զգամ, հեռի իմ բարեկամներէս։*

*Ինչպէս նախորդ նամակիս մէջ ըսած էի, [4]հոս ընկեր մը, ճշմարիտ ընկեր մը [3]գանել [2]դժուարին [1]է։ [2]Ուստի ժամանակիս մեծագոյն մասը [1]կ'անցընեմ կարդալով* (à lire), *մերթ մեծ կաղնւոյն տակ, մերթ գետակին եզերքը* (au bord de . . .) *եւ մերթ բլրոյն գագաթը։*

Խնդրելով քեզ յիշեցնել զիս բոլոր բարեկամացս ,

Մնամ միշտ քոյդ

. . .

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Հաղարաւոր (հազար) զբօսանքներ (passe-temps) կը համառօտէին ձմրան երկայն գիշերները.— Երկրաշարժները հրաբղխային պայթմանց կարապետներն են.—Քոյր իմ, ձեռաց սրբիչները աղտոտեր ես. պէտք է որ անմիջապէս զայնս լուաս (Սաներկ).— Կրօնքը եւ արդարութիւնը, [1]ըսած են [2]մեծ [3]իմաստասէրներ, ընկերութեան երկու կամարակալներն են.— Ջղջիկները, որք միայն (ne . . . que) գիշերները կը թռչին, տգեղ կենդանիներ են, [1]ըսած է [2]մեր կենդանաբանութեան [3]ուսուցիչն.— Ցեռանուչն չուկայ գացի հօրեղբօրս հետ, եւ վեց դրամապանակ, երկու թաղար, երեք փղոսկրեայ սանտրաքոր, եօթը կտաւեայ ձեռաց սրբիչ, ութը զոյգ սուրճի գաւաթ գնեցի, զորս այս երեկոյ յիւսկիւտար պիտի ղրկեմ.— Թռչնաճանճերն, պզտիկ կենդանիներ, բնութեան հրաշակերտներն են. ամենէն փայլուն մետաղներն բաղդատելի չ'են բնութեան այդ գոհարներուն.— Որչափ ճանճ կայ այս սենեակին մէջ. ճանճվան մը պէտք է զայնս վանելու համար. — Այնչափ տաք կ'ընէ որ մերարկու չ'հագնուիր (չափազանց տաք կ'ընէ մերարկու կրելու համար) :



## ԴԱՍ ԼԴ.

Միադէմ (unipersonnel) *բայերուն ընդ. անց-եալը միշտ* անփոփոխ *կը մնայ. ինչ.* «Ըրած» տաքութիւնները, les chaleurs qu'il a *fait*. «Եղած» փոթորիկները, les orages qu'*il y a eu*.

**Fait** *ընդ. անցեալը անփոփոխ կը մնայ, երբ իրմէ ետքը* Աներեւոյթ *մը գտնուի. ինչ.* Նամակները գրել տուի՞ք. Avez-vous *fait* écrire les lettres ? —Այո, զանոնք գրել տուի, Si, je les ai *fait* écrire.

## ՁԻՆ ԵՒ ՈՍՏՐԷՆԵՐԸ

*Ձմռան խիստ ցուրտ օր մը* (par un . . .) *ձիաւոր մը պանդոկ մը (օթարկ.) մտաւ, բայց կրակին քով տեղ չ'կրցաւ գտնել։ Ուստի պանդոկապետը կանչեց եւ անոր ըսաւ որ անմիջապէս իր ձիուն կէս օխա ոստրէ տայ։ «Ձիերնիդ ոստրէ կ'ուտէ՞», հարցուց պանդոկապետը.—Եթէ չ'ուտեր (անկէ չ'ուտէր), ձեզ չ'պիտի ըսէի որ իրեն ոստրէ (անկէ) տայք», պատասխանեց պարոնը։—Պանդոկին մէջ գտնուողները անմիջապէս պանդոկապետին (պանդոկապետը) հետեւեցան այս հրաշքը տեսնելու համար, եւ պարոնը լաւագոյն տեղն ընտրեց կրակին քով։*

Պանդոկապետը սատրէնները ետ բերաւ, ըսելով թէ ձրին անոնց չ'էր դպչեր։ «Լաւ ուրեմն (eh bien)», ըսաւ պարոնը, «պիտի սախպուրիմ զանոնք ես (moi-même) ուտելու։»

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Հազար ութը հարիւր յիսուն եւ վեցին եղած ողողումներուն մեծ աղէտներ պատճառեցին. — Զմրան սկիզբը (au commencement de . . .) ըրած ցուրտերը այնչափ սաստիկ էին որ բոլոր գետակները սառով ծածկուեցան. — Վարձատրութիւններ բաժնուեցան (il a été distribué des . . .) այն շպրոցականաց որք տարւոյն ընթացքին մէջ ամենէն լաւ աշխատած էին.—Բարիզէն բերել տուած հովանոցներս քրոջս ղրկեցի, որովհետեւ անոնց պէտք ունէր. — Ամառուան գեղեցիկ օր մը զաչտերուն մէջ կը պտըտէի քրոջս հետ. բնութիւնն զմեզ կը հրապուրէր. — Ես բերէք այն ակնոցի տուփը (étui) զոր ձեզի տուի. ուրիշ մը (անկէ ուրիշ մը) պէտք է գնել. առաջինը այնչափ պզտիկ (trop . . . pour) է որ ակնոցը չի կըրնար պարունակել.— Ձեզի համար գնել տուած ասեղներս ասղանոցին մէջ դրէք։



## ԴԱՍ ԼԴ.

Իւրաքանչիւր, **chaque**, *ածական է և իրմէ ետքը միշտ գոյական կ՚ուզէ. պէտք չէ շփոթել* իւրաքանչիւրն, իւրաքանչիւր ոք **chacun**-*ի հետ, որ դերանուն է և իրմէ ետքը գոյական չ՚ուզեր. Ինչ.* «Իւրաքանչիւր» աշակերտ, *Chaque élève*.— «Իւրաքանչիւրն» տետրակը ցուցուց, *Chacun* montra son cahier.

*Հայերէն* որչափ... այնչափ աւելի *Ֆրանսացւոց մէջ կը թարգմանուի* **plus**... **plus**-*ով. Ինչ.* «Որչափ» մարդ հարուստ ըլլայ, «այնչափ աւելի» հարուստ ըլլալ կ՚ուզէ, *Plus* on est riche, *plus* on veut l'être.—*Ասոր հակառակն՝ է* որչափ... այնչափ քիչ, plus ... moins. *Ինչ.* «Որչափ աւելի» պոռայք, «այնչափ քիչ» մտիկ պիտի ընէ ձեզ, *Plus* vous crierez, *moins* il vous écoutera.

## ԶՄԵԶ ԿՐՈՂ ԵՐԿԻՐՆ

*Երկիրն, որ զմեզ կը կրէ, կը հանէ* (tirer) *իւր արգաւանդ ծոցէն ամէն ինչ որ* (tout ce qui) *պէտք է մեր սննդեան համար. Ամէն ինչ անկէ կ՚ելնէ, ամէն ինչ հոն կը մտնէ, ամէն ինչ հոն կը վերա-*

ծնանի իւրաքանչիւր տարի · երկիրը երբէք չ'մաշիր ։ Որչափ իւր ընդերքն պատառեմք , այնչափ աւելի կը զեղու զմեզ իւր պարգեւներով (de . . .) , վարձատրելու համար զմեզ մեր աշխատութեանց համար (de)։ Կը ծածկուի հունձերով, կը զարդարուի դալարիօք , կը սնուցանէ մարդն , ինչպէս նաեւ անոր (զայն) ծառայող եւ զայն սնուցանող կենդանիներն ։' Իւր ծոցին մէջ անկուած ծառերը մեծ փունջեր են , որ կը զարդարեն զայն (1) , ինչպէս մազերը կը զարդարեն մարդուն գլուխը ։ Ծաղիկները որ կը գեղեցկացնեն բոլոր բնութիւնը՝ պտուղ (պտուղներ) կը խոստանան , եւ պտուղները՝ որ տարին կը պսակեն , առատութիւն կը սըփռեն ։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Հոգեկոյս մեծ մայրս , որ իննսուն տարու էր , կ'ըսէր յաճախ · իւրաքանչիւր օր գետնէն ասեղ մը վերցուցէք , տարւոյն վերջը (au bout de . . .) ութսուն սու կ'ունենայք (պիտի ունենայք) · — Իւրաքանչիւր ոք իւր դրացւոյն աչքին մէջ յարդ մը կը նշմարէ (պիտի նշմարէ) , բայց չ'նշմարեր (չ'պիտի նշմարէ) իւրենին մէջ եղող գերանը·— Զաւակներս , կ'ըսէր օր մը խելացի հայր մը , որչափ բարձր աստիճան (rang) մը ունենաք ,այնչափ աւելի համեստ ըլլալու էք·— Այս հօտին կովերէն իւրաքանչիւրը չորս հարիւր քիլօկրամ կը կշռէ·—Աղջիկս , որչափ

(1) Զայն այսինքն երկիրն ։

Հնազանդ ըլլայք ձեր մօր, այնչափ աւելի պիտի սիրուիք անկէ. ընդհակառակն, որչափ անհնազանդ ըլլայք իրեն, այնչափ քիչ պիտի սիրուիք անկէ.— Երբ իւրաքանչիւր առարկայ իւր տեղն (à sa place) է եւ թէ (que) այս առարկաներէն իւրաքանչիւրին համար տեղ մը կայ, մարդ (on) իւր ժամանակը բնաւ չը կորսնցներ.— Մայր իմ, որչափ լայք, այնչափ աւելի ձեր զաւակներն պիտի տըրտմին.— Կարծեմ թէ որչափ յառաջանամ (Ա.պ.) Թուագրութեան մէջ, այնչափ աւելի դժուարութեանց (դժուարութիւններ) պիտի հանդիպիմ.— Ոչ, սիրելիս, կը սխալիք. ես գձեզ կը վստահեցնեմ թէ որչափ յառաջանայք, այնչափ քիչ դժուարութիւններ պիտի գտնէք յառաջանալու։



## ԴԱՍ ԼԵ.

Ընդ. անցեալը՝ եռեւէն աներեւոյթով մը՝ անփոփոխ՝ կը մնայ՝ եթէ իւր սեռի խնդիրն այդ աներեւոյթն է. ընդհակառակն, Ընդ. անցեալը կը համաձայնի՝ եթէ իւր սեռի խնդիրն իրմէ առաջ դրուած դերանունն է. ինչ. Այն ոտանաւորները որոց «արտասանութիւնը» լսեցի շատ գեղեցիկ էին. Les vers que j'ai *entendu* réciter étaient magnifiques. (լսեցի, ինչ, ոտանաւորներուն

արտասանութիւնը. (*չհամաձայնիր*)։— Այն «անձերը» որոց ոտանաւորներ արտասանելը լսեցի զիս հըրապուրեցին, Les personnes que j'ai *entendues* réciter des vers m'ont charmé. (*լսեցի, զո՞վ,* անձեր *որք ոտանաւորներ կ'արտասանէին. կը համաձայնի*)։

Ծանօթ. — *Դիւրին միջոց մը կայ հասկնալու համար թէ ընդ. անցեալը՝ ետեւէն աներեւոյթով պէտք է համաձայնի, երբ աներեւոյթը կրնամք ընդ.* ներկ.*ի փոխել. Առնենք վերի օրինակներն.* Les vers que j'ai entendu réciter, *եւայլն, կրնա՞մք ըսել* Les vers que j'ai entendu *récitant*, այն ոտանաւորները որոց «արտասանելը» լսեցի. *ո՛չ, որովհետեւ ոտանաւորները չեն կրնար արտասանել, բայց կրնամք ըսել* Les personnes que j'ai entendues *récitant եւլն*, այն անձերը որոց «արտասանելը» լսեցի. *համեմատաբար կը համաձայնի*։

## ՀՐԱՇԱԳՈՐԾ ՏՈՒՓՆ

*Ցովհաննէս ագարակապետն եւ իւր կինն Մարիամ կը գանգատէին թէ իրենց գործերը գէշ կ'երթային։ Իրենց գիւղէն ծեր մարդ մը, որ, կ'ըսէին* (disait-on), *քիչ մը վհուկ էր, անոնց ըսաւ. «Հաւատացէք ինծի. այս գոց պզտիկ տուփը առէք. ձեզ չ'եմ կրնար ըսել թէ ինչ* (ce que) *կը պարու-*

նակէ, բայց սա՛ բանը (ceci) ըրէք. օրը երեք անգամ, եւ գիշերը մէկ անգամ, ⁴ագարակին ³ամէն կողմերը (կողմերուն մէջ), շտեմարանը*, մառանը*, ախոռը*, գոմը* ¹տարէք ²զայն, եւ տարիէ մը վերըստին ինձ բերէք զայն: »

Յովհաննէս եւ Մարիամ հնազանդեցան: Այդ, մոգական տուփին տեղը փոխելով, (tout en changeant), կը տեսնէին (կը գտնէին) որ շտեմարանին մէջ անձրեւը կը մտնէր բաց թողուած պատուհանէ (par . . .) մը, մառանին մէջ սպասաւոր մը խնձորները կ'ուտէր. ախոռին մէջ ձիերը վարսակ չ'ունէին. գոմին մէջ կովերը խմելիք (à boire) չ'ունէին:

Տարի մը անցաւ (s'écouler). Եկան ծերունին գտնելու եւ անոր ըսին. «Մեր գործերը աղէկ կ'երթան, շնորհիւ այս հրաշագործ տուփին. թող տըւէք մեզ զայն պահել»: Ծերունին տուփը բացաւ խնդալով. մէջը (dedans) բան մը չ'կար: «Զաւակներս, ես վհուկ չեմ, ըսաւ, բայց ձեզի բարի խորհուրդ մը տուի: Ձեր գործոց (գործերը) վրայ անձամբ (vous-même) հսկեցէք, եւ ձեր գործերն միշտ աղէկ պիտի երթան:

(*) Շտեմարան, մառան, ախոռ, գոմ բառերը տրական հոլով պիտի դրուին:

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Այն խաղը (pièce) որոյ ներկայացուիլը տեսանք (զոր տեսանք ներկայացնել) յաջողեցաւ եւ հաճելի եղաւ հանդիսատեսներուն, հակառակ իւր փոքր պակասութեանց (պակասութիւններր) .— Այն գեղեցիկ գործերը որոց գովուիլը լսեցիք՝ (զոր լսեցիք գովել) ըստ արժանւոյն (dignement) վարձատրուեցան .— Այս առաւօտ մեր այգին (տրակ.) գացինք, եւ կերանք այն խաղողները որոց քաղուիլը տեսած էինք (զորս տեսած էինք քաղել) . — Պիկմալիոն, [1]ըստ [2]մեր [4]պատմութեան [3]դասատուն, միայն (ne...que) այն միսերը կ'ուտէր որոց պատրաստուիլը տեսած էր (զորս տեսած էր պատրաստել) կամ զորս ինք անձամբ (lui-même) պատրաստած էր . — Այն փաստաբանները որոց պաշտպանելը տեսանք (զորս տեսանք պաշտպանել), մեծ տաղանդ մ'ունէին.— Այն չիկահաւերը որոց երգելը լսեցինք (զորս լսեցինք երգել) անտառին մէջ՝ զմայլեցուցին զիս. — Սա մուրացկանին ուտելիք եւ խմելիք տուէք. — Սիրելի հօրեղբայրս, մեզմէ բաժնուելնուդ ի վեր (depuis que vous nous avez quittés) տարի մը անցաւ, եւ դեռ երկու նամակ միայն (ne . . . que) գրած էք մեզ.—Հողէ ամանը բանա՞մ. ոչ, դուք ձեր ձեռքով (դուք անձամբ) բացէք զայն.—Տէր Աստուած, մէջը բան (ոչինչ) չը կայ։



# ԴԱՍ ԼԶ.

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՔԱՂ

## (Ա.—Ը.)

*Հօրեղբօրս տունը երկու յարկէ կը բաղկանայ, որոց իւրաքանչիւրը երեք սենեակ ունի . առաջին յարկի սենեակներէն իւրաքանչիւրը գորգով ծածկուած է . գալով երկրորդ յարկի սենեակներուն , անոնցմէ իւրաքանչիւրը փսիաթով ծածկուած է . —Գիտէ՞ք թէ կովերը ինչո՞վ կը սնանին . — Այո , գիտեմ (գիտեմ զայն). կովերը՝ ինչպէս բոլոր միւս արջառները՝ խոտով կը սնանին.—Ժամը չորս ու կէսին (չորս ժամ եւ կէս) ատեններ* (vers) *գիւղին բոլոր բնակիչները բարձր ձայնով կը պոռային . «Օգնութի՜ւն . կրա՛կ կայ ,* (au feu) *կրա՛կ կայ :» —Եղբօրորդւոյս տունը երէկ ծերունի մը տեսայ , որ երիտասարդութեան հաճոյքներուն* վրայ *կը խօսէր : Ծերունին ի՛ւր խօսքերը վերջացուց ըսելով . երանի՜ այնմ որ գիտէ իւր երիտասարդութեան օրերը աղէկ անցունել. — Քանի՞ տարեկան էր այդ ծերունին. —Ութսուն ութսուն եւ հինգ տարեկան* (de... à... ans) *կ'երեւէր. — Այս առաւօտ ձեր տունը եկայ, բայց եղբայրնիդ տունը չի գտայ .—Հայրերնիդ*

*ո՞ւր է հիմայ.—Ցրտոտ է. աղէկ միտքս ինկաւ* (1). *անցեալ շաբթու ձեզի համար վեց շիշ Պորտօի գինի եւ ութը կանգուն եգիպտական կտաւ ղրկած էր.—Ա՛, չափազանց բարի է. խնդրեմ, երբ իրեն նամակ գրէք, ըսէք իրեն թէ մեծապէս շնորհակալ եմ այն նուէրներուն համար զորս ինծի ըրած է.—Ագռաւը եւ արագիլը աղուէսէն* (par le ...) *խաբուեցան.—Այդ* (2) *երիտասարդին բերանը եւ շրթունքները կարմիր էին (այդ երիտասարդը ունէր բերանը եւ շրթները կարմիր), մօրուքը եւ մազերը երկայն, աչքերը եւ յօնքերը սեւ։*



## ԴԱՍ ԼԷ.

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՔԱՂ

(*Ը.—ԺԴ.*)

*Որչափ կը փափաքիմ յԱնգղիա ճանբորդել, Անգղիարէն լեզուն լաւ սորվելու համար.—Ձեռնոցներս ո՞ւր են արդեօք* (donc). *բոլոր սենեակնե-*

---

(1) Աղէկ միտքս ինկաւ, à propos.

(2) *Երբ բառէ մը առաջ* այս *գտնուի՝ բառին վերջը* ci *կը դրուի. իսկ եթէ* այդ *ըլլայ՝ բառին վերջը* là *կը դրուի*։ «Այս» մարդը, cet homme-*ci*. «այդ» մարդը, cet homme-*là*.

րուն մէջ մնտռեցի ղայնս, բայց զանոնք չ'գտայ. —Հողմերը զոր Աստուած ստեղծած է, եղած (y avoir) տաքութիւնները (այն տաքութիւնները որ եղան) իւր բարութեան արգասիքն են. — Սիրելի հարստութիւններս, ի՞նչ եղայք (devenir). Ինչո՞ւ զձեզ կորուսի այսչափ շուտ. —Կը հաճի՞ք ինձ վերադարձնել ձեզ փոխ առած փղոսկրեայ գրիչս — Մէկ անձ միայն կը ճանչեմ զգայուն այն բարեաց որովք (dont) զինքը կը լնուն. ձեր դրացւոյն որդին է այն (c'est). — Թէ՛ որ չ'է աշխատած՝ արժանի չէ վարձատրութեան. —Ո՞վ կրնայ վերցնել սա երկաթի կտորը. կ'ըսեն թէ իննսուն օխա կը կշռէ. — Ի՞նչ ունիք ուտելու, բարեկամներ. — Միայն միս եւ հաց ունիմք. կ'ուզէ՞ք (անոնցմէ կ'ուզէ՞ք). — Ամեն մարդ ուրախութեամբ լի էր. — Եղբայրս առաւօտուն կանուխ Լիլ մեկներ է, [1]առանց իւր ծնողաց [2]բան մը (rien) [3]ըսելու. — Այրն կազմուեցաւ երկրի կաւէն (limon), եւ կինը կազմուեցաւ այրէն. երկուքն ալ կազմուեցան ըստ պատկերի (à l'image de) Աստուծոյ.—Այսօր ի՞նչպէս անցուցիք.—Առաւօտուն եկեղեցի գացի. կէս աւուր ճաշէն վերջը գեղեցիկ այգի մը գացի եւ խնձորենիոյ մը շուքին տակ նստայ.—Շաբաթ օրը ժամը երկուքին ձի հեծաւ, իւր բարեկամաց հետ ճաշելէ վերջը.—Ձեռուընիդ (la main) վերցուցէք (lever), պարոն առաջին ատենապետ (առաջին ատենապետը)։



## ԴԱՍ ԼԸ.

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՔԱՂ

(ԺԴ.—Ի.)

*Օրիորդ, Թաշկինակնիդ գետինը ինկեր է. վեր առէք զայն.—Ծերունին յամրաքայլ կը յառաջանար, իւր որդւոյն ձեռքէն (ձեռքը) բռնած* (tenant par . . .).—*Հաճոյքով կը դիտէինք ընդարձակ դաշտերն դեղին հասկերով ծածկուած.—Այս արկղիկները երգիչներո՞ւն են.—Այո, պարոն, երգիչներ* են.—Պարոն դուքսին երգիչնե՞րն են.—Ոչ, այն երգիչներն* չ'են.—Պարոնայք, Ֆրանսացի՞ էք.—Այո, Ֆրանսացի* ենք.—Տիկին, այս սիրուն եւ խելացի տղոց մա՞յրն էք.—Այո, անոնց մայրն* եմ.—Ինձ կը հարցնէք թէ ինչո՞ւ այս տղայներն այնքան ուրախ են. Ի՞նչպէս կ'ուզէք որ ուրախ* չ'ըլլան.—Գետինը ճերմակ բան մը տեսայ, բայց ինչ ըլլալը* (ce que c'était) *չ'կրցի որոշել.—Ձեր ծառերն շատ աւելի պտղաբեր պիտի ըլլային, եթէ աւելի լաւ խնամած ըլլայիք զանոնք.—Պատկերա-*

---

(*) Երգիչներ, այն երգիչներն, Ֆրանսացի, անոնց մայր, ուրախ *բառերն մի՛ կրկնէք. յարմար դերանուամբն բացատրեցէք զանոնք:*

զարդ գիրք մը գնեցի, բայց անոնց պատկերները դեռ չը դիտեցի.—Սեղանը նոր ներկուած է. անոր մի դպչիք.—Այս դանակը շատ սուր է. եղբայրս անոր կոթը կոտրեց.—Եղբայրս Բարիզ է. ամսոյս վեց թուականաւ նամակ մը ընդունեցայ անկէ. Նամակին հետ ինձ ղրկած էր գեղեցիկ եւ պըղտիկ դարան մը, [1]որոյ (dont) [3]բանալին [2]կորուսի.—Մեր պարտիզին մէջ շատ տեսակ ծաղիկներ կան. սա ծաղիկները կը տեսնէ՞ք. նոքա աշնան մէջ կը բացուին (s'épanouir կամ éclore), եւ մէկ ոտք բարձրութիւն ունին. — Հնգետասաներորդ եւ վեշտասաներորդ դարերն նշանակուած են (être marqué) մեծ գիւտերով (par . . .).— Նախնի եւ արդի (moderne) փիլիսոփայներուն նպատակն է զմարդիկ առաքինի ընել (rendre). — Վերիպակաց ցանկերը խիստ կարեւոր են գրոց մէջ.—Գեղեցիկ օբէլաններ երգուեցան չորեքշաբթի օրը թատրոնին մէջ. — Թղթաբերը երեքշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ օրերը կուգայ.—Ուրբաթ օրը ոսկիէ ժամացոյց մը եւ երկու արծաթեայ սուրճի գաւաթ գնեցի, զորս կիւրակէ օրը ծախեցի:



## ԴԱՍ ԼԹ.

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՔԱՂ

(Ի.—ԻՋ.)

Անծանօթ մարդուն մեկնումէն քիչ մը վերջը (bientôt après) տեսայ որ բառգիրքս գողցուած էր. —Քանի՞ էջ ունէր.—Ինը հարիւր տասը էջ ունէր. զայն դարանիս մէջ պահելու էի.—Քոյրս կ'ըսէ թէ ամենէն աւելի սիրած ծաղիկը վարդն է. որովհետեւ, կ'ըսէ, վարդը ծաղկանց ամենէն գեղեցիկն է. —Առաջին զգացումներին, ըսած է Լուդովիկոս, միշտ ամենէն անկեղծներն են.—Եթէ այս ճահիճին մէջէն անցնիլ փորձէք, ամենուն ծաղր ու ծանակին ենթակայ պիտի ըլլայք.—Դուրս ելնելու վրայ էի, երբ պարոն տնօրէնը զիս կանչեց.—Պարոն գանձապետին երկայն նամակ մը պիտի գրեմ եւ երկու հարիւր ֆրանք պիտի պահանջեմ իրմէ, ի նկատի առնելով (vu) այն ծախքերը զոր ըրած եմ ութսուն օրերէ ի վեր.—Գլուխնիդ բաց եւ բոկոտն մի' կենայք. գլխարկնիդ դրէք եւ գուլպայներնիդ հագէք (դրէք).—Լուսահոգի մայրս բնաւ գլուխը բաց կենալ չ'էր սիրեր.—Անցեալ կիւրակէ, տասն երեք օգոստոս, Լոնտոնի մայր եկեղեցւոյն մէջ հանդիսաւոր պաշտօն մը տեղի ունեցաւ վախճան-

եալ թագուհւոյն համար . — Լատիններէն եւ յունարէն լեզուներն երկու լեզուներ են որոնք երկայն ատեն խօսուած են , եւ որք այլ եւս չ'են խօսուիր . — Ջուրերն ստորերկրեայ ճանբայներ բացած են (se pratiquer)· — Այս գրիչը փոխել տըւէք , ինչու որ շատ ծանր է . եթէ ուրիշ չունի , Ես եղբօրս ոսկորէ գրիչ մը գնել կուտամ ։



## ԴԱՍ Խ·

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՔԱՂ

(ԻԶ·—ԼԶ·)

Քանի՞ գիրք կը կարծէք որ կարենայ առնել այս մատենադարանը . — Սոսկալի տագնապի մը մէջ եմ . չ'եմ գիտեր ինչպէս պիտի ելնեմ գործին մէջէն . — Երկար ատեն կայ որ զիրար չ'էինք տեսած · — Երբ բժիշկը եկաւ, հիւանդը քննեց եւ դեղագիր մը գրեց , զոր դեղագործին ղրկել տուաւ . — Այնչափ խոհեմ է որ վտանգաւոր գործերու չը խառնուիր . — Հայ եկեղեցին շատ մը ներդաշնակ շարականներ ունի · — Սոքա (ce) զոյգ մը խաբե-

բայներ են. — Ի՞նչպէս էք. — Շատ շնորհակալ եմ ձեզ. եւ դո՞ւք. — Իմացայ (apprendre) թէ քոյրերնիդ ի Բարիզ մեկներ է. իրա՞ւ է. — Այո՛, հինգ ամսէ ի վեր. — Բարեւ ըրէք տունը. — Գլխուս վրայ. — Ո՞ւրկէ մտայք. — Պատուհանէն, որովհետեւ դուռը գոցուած էր. — Բնութիւնը շատ քիչ անգամ կ'արտադրէ Հոմերոսներ, Հիւկօներ, Լամարթիններ. — Լատին մատենագրութիւնը իրաւամբ կը հպարտանայ իւր երկու Սենեկաներուն եւ երկու Պլինոսներուն վրայ. — Շատ քիչեր շատ մը կը կազմեն. — Մեր նախնիք աղքատ եւ առաքինի կ'ապրէին, եւ կը մեռնէին այն գաւառին մէջ ուր իրենց ծնիլը տեսած էր (ուր զանոնք տեսած էր ծնիլ). — Ամեն կողմէ տեղացող այծերը, ոչխարը, լինչուները զմեզ կը խլացնէին. — Փղոսկրեայ ատամնաքարեր ծախող մարդը ծովը ինկաւ. — Հազարաւոր ծիրանեգօտիներ անդունդին վրայ կը խաչաձեւէին. — Վիշտն եւ անհանգստութիւնն, կ'ըսէր լուսահոգի հանիս, գէշ զարթուցիչ ժամացոյցներ են. — Անցեալ շաբթուան ըրած տաքութիւնները անտանելի էին. — Հօրս ինձ գրել տուած նամակը ո՞ւր դրիք. — Իւրաքանչիւր ժողովուրդ իւր սովորութիւններն ու բարքերն ունի. — Մեզմէ իւրաքանչիւրը ութսուն եւ հինգ դրուշ վճարելու է. — [3]Մոլի [2]մարդը [1]որչափ տարիքը առնէ (1), այնչափ աւելի մոլութիւնը անոր մէջ (en) խոր արմատներ կը ձգէ (jeter).

---

(1) Տարիքը առնել, avancer en âge.

## ԴԱՍ ԽԱ.

*Գիտեն արդէն ուսանողք թէ Չէզոք բայերէն մեծագոյն մասը երբեմն* avoir *և երբեմն* être *օժանդակով կը խոնարհին, և ոմանք միշտ* êtreով (1)։ *Արդ,* **avoir** *օժանդակով խոնարհեալ չէզոք բայի մը ընդ. անցեալը միշտ անփոփոխ կը մնայ, որովհետև սեռի խնդիր չկրնար ունենալ։ ինչ.* Մեր ծաղիկները ոչնչացան, nos fleurs ont *péri* ։

*Նոյնպէս ընդ. անցեալը* անփոփոխ *կը մնայ հետևեալ և անոնց նման խօսքերուն մէջ.* «Թագաւորած» քանի մը տարիներն, les quelques années qu'il a *régné*. «Ապրած» քանի մը ամիսներն, les quelques mois qu'il a *vécu*, *ևլն, որովհետև այս տեսակ խօսքերուն մէջ կրճատեալ նախադրութիւն մը կը գտնուի. ինչ.* les quelques années (*զօրութեամբ* pendant lesquelles) il a régné, les quelques mois ( *զօրութեամբ* pendant lesquels ) il a vécu ։

(1) Տես Հիմն. Եղան. Ա. *տարի*, *էջ* 97, 99 100.

## ԳՐԱՒԸ

Դատարկապորտ մը որ աւելի խելք ունէր քան թէ ստակ, օր մը պանդոկ (տրակ.) մը գնաց, ուր տեսաւ գիւղացի ագարակապետ մը որ՝ իւր առջեւ շիշ մը գինի ունէր։ Դատարկապորտը ագարակապետին հետ խօսակցութեան մտաւ (entrer en conversation), եւ թուելէ վերջ (après avoir énuméré) շատ մը արտասովոր բաներ զորս կրնար ընել, ըսաւ թէ կրնար գինւով լեցուն շիշի մը մէջէն (մէջ) խմել ճիշդ այնքան (autant de . . .) գինի որքան (que) գինւոյ բաժակ մը կրնար առնել, ոչ աւելի ոչ պակաս։ Ագարակապետը այս խօսքերուն հաւատալ չ'ուզեց. այն ատեն երիտասարդը ըսաւ. «Ծանր (մեծ) գրաւներ դնել (ընել) չ'եմ սիրեր. բայց ես կը խոստանամ ձեզ քսան փարայ տալ եթէ ըսածս չ'ընեմ։» Ագարակապետը գրաւը ընդունեց (accepter), օտարականը շիշը առաւ եւ մէկ շնչով (d'un seul trait) շիշը պարպելէ (vider) վերջ՝ դէպ ի ագարակապետը դարձաւ եւ ըսաւ. «Կը խոստովանիմ, պարոն, թէ կորուսի. ահա ձեր քսան փարայն։»

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Երանի այնմ որ կ'ապրի ինչպէս ապրեցան իւր հարքն.—Այս օտարական տիկինը միշտ շատ ողոր-

*մութիւններ տուաւ (ըրաւ) ⁶մեզ ⁵հետ ⁴անցրած ²տասը ³տարիներու (տարիները) ¹միջոցին* (durant). — *Որչափ դէպքեր անցան* (se passer) *Լուդովիկոս ԺԴ.ի տիրած եօթանասուն երկու տարիներու միջոցին.* — *Դետակին ջուրը այնքան* (si) *պաղ էր որ քանի վայրկենէ աւելի դողացինք* (grelotter) *անկէ դուրս ելած ատեննիս* (en en sortant). — *⁵Թատրոնը (Թատրոնին մէջ,* à) *²բնաւ ⁴բարեկամ ³մը ¹չ'ունեցայ. Բարեբաղդաբար քովս սիրուն երիտասարդ մը կար որուն հետ խօսակցութեամբ մնայ.* — *Գաւաթ մը գինին մէկ շնչով կրնա՞յք խմել. Եղբայրս կրնայ (զայն կրնայ).* — *Իմացայ թէ եղբօրորդիներդ անհանգիստ է. Իրա՞ւ է.* — *Որչափ այս մարդը տարիքը կ'առնէ՝ այնչափ աւելի կը չարանայ* (devenir méchant). — *Պօղոս պատահմամբ այս տեղը գացած ըլլալով ուրախութեամբ լեցուեցաւ տեսնելով այս մեծ ծառերը որոց տնկուիլը տեսած էր.*



## ԴԱՍ ԽԲ.

*Հայերէն* շատ չ'ընէր, դեռ նոր, քիչ մը առաջ *Ֆրանսերէնի մէջ* **ne faire que de** ... *ով կը թարգմանուի. ինչ.* «Շատ չ'ընէր» դուրս ելնէ-

նելը, «դեռ հիմայ», «դեռ նոր», «քիչ մը առաջ» դուրս ելաւ, il *ne fait que de* sortir (1)։

*կայ նաեւ* **n'avoir que faire de . . .**

*որ կը նշանակէ* պէտք չ'ունենալ ։ *ինչ.* Ստակիդ «պէտք չ'ունիմ», je *n'ai que faire de* votre argent ։

*Իսկ* ne faire que *բոլորովին տարբեր նշանակութիւն մ'ունի, եւ կը համապատասխանէ հայերէն* միշտ . . . , . . . են ուրիշ բան չ'գիտնալ *բացատրութեանց* ։ *ինչ.* Միշտ դուրս կ'ելնես, դուրս ելնելէ ուրիշ բան չ'ես գիտեր, vous *ne faites que* sortir ։

Եւ՝ *երբ բացասական խօսքի մը մէջ շաղկապի փոխանակ* et*ի* ni*ով կը բացատրուի տարբերաբար։ ինչ.* Դպրութիւնները *եւ* գիտութիւնները չը մշակեր, il ne cultive pas les lettres *ni* les sciences ։

ՆԱՄԱԿ ԵՐԻՏԱՍԱՐԴԻ ՄԸ ԱՌ ԻՒՐ ԵՂԲԱՅՐՆ

15 *սեպտ.* 1887

*Լոնտոն*

*Սիրելիդ իմ Պետրոս,*

*Քու հօր աղաչանքով է* (c'est par . . .) *որ կը գրեմ քեզ, յանդիմանութիւններ ուղղելու համար*

(1) *Գրեթէ մի եւ նոյն իմաստով կը գործածուի* venir de ։ *ինչ.* Il *vient de* sortir. (Տես Հիմն. Եղան. Ա. *տարի*, *էջ* 131, 127)։

*քեզ երկար լռութեանդ համար։ Երեք շաբաթ կայ որ ձեզմէ նամակ չ'ունիք առած, սակայն տեղեկութիւններ առինք քու վարմանց վրայ, որ ոչ* (ni) *պատուաբեր է քեզ ոչ* (ni) *գոհացուցիչ մեզ համար։*

*Մեր բարեկամներէն մին շատ չ'ըներ Բարիզէն ելած, ուր շատ առիթներ ունեցած է վարմունքդ դիտելու, եւ հօրդ հետ տեսակցութիւն մը վերջ, ուզեց որ անմիջապէս քեզ գրեմ* (*Առ. Ներկ.*) *իմացընելու համար քեզ որ անյապաղ գալստեանդ կը սպասէ։*

*Ցաւ* [1]*կը ցաւիմ* (être fâché de . . .), [2]*սիրելի եղբայրս,* [6]*քեզ նմանօրինակ նամակ մը* [7]*գրելու* [5]*ստիպողականութեան* [4]*մէջ* [3]*գտնուելուս, բայց դու քաջ տեղեակ ես* (vous connaissez bien) *մեր սիրելի հօր քու երջանկութեան համար ունեցած հոգատածութեան* (*հոգատածութիւնը*). [2]*ուստի* [1]*կը յուսամ թէ իւր խնդրոյն հպատակելու* (1) *չ'ես թերանար* (2)։

*Հաւատա զիս յաւէտ*
*սիրելի եղբայր քո*
. . .

---

(1) Հպատակիլ (*հրամանի մը, եւլն*) se conformer à . . . — (2) Manquer *բայց երբ* մէկու մը կամ բանի մը պարտական եղած բանը չ'ընել, պարտքը կատարելէ թերանալ *նշանակէ՝* à *ով աներեւոյթ խնդիր կ'առնէ. իսկ երբ* մոռնալ, թողուլ *կամ* քիչ մնալ *նշանակէ՝* **de** *կ'առնէ աներեւոյթ խնդիրէն առաջ։*

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Եղբայրս տեսա՞յք.—Քիչ մը առաջ զինքը տեսայ. բարեկամի մը հետ թատրոն կ'երթար. — Զբօսնուլէ ուրիշ բան չ'գիտեր. պարոն տնօրէնը քիչ մը առաջ զինքը ուզեց (demander). —Եթէ այս գրքին պէտք չ'ունիք, [3]ինծ [1]փոխ տըւէք [2]զայն.—Ձեր մօր խնդրանաց վրայ է որ զինքը կանչեցի քանի մը բարեկամական խրատներ տալու համար իրեն.—Իւր վարքը գոհացուցիչ չէ՞. —Բնաւ (du tout). խաղալէն ուրիշ բան չ'գիտեր.— Ըսէք ձեր դրացւոյն թէ իրեն եւ իւր այցելութեանց պէտք չունիմ. աւելի աղէկ է (յաւագոյն կ'արժէ) մէկ անկեղծ բարեկամ ունենալ քան թէ սուտ կեղծ բարեկամներ (1). — Շատ կը ցաւիմ այդ երեկոյթէն բացակայ գտնուելու ստիպողականութեան մէջ գտնուելուս. — Քանի որ հայրս է (c'est) որ այս խորհուրդները ինծ կուտայ, պիտի ջանամ հետեւիլ անոնց եւ հպատակիլ իւր կամաց. — Այլ եւս ուսանելու պէտք չունիք. բաւական գիտուն էք. — Եղբայրս քնանալէն ուրիշ բան չ'գիտեր. դեռ նոր անկողինէն ելաւ (2) եւ դարձեալ կ'ուզէ պառկիլ.—Աղէկ միտքս ինկաւ. անցեալ օր (l'autre jour) եղբայրնիդ չ'հաւատաց որ երկիրը մոլորակ մ'է, եւ թէ կը դառնայ արեգակին չուրջը։

---

(1) Թարգմանեցէք . . . քան թէ տասը կեղծ ունենալ։

(2) Անկողնէն ելնել, se lever.

## ԴԱՍ ԽԳ.

**Mon , ton , son** *ածականներուն տեղ* le , la , les *յօդերը կը գործածուին բայի մը խըն-դրոյ եղող բառին քով, երբ խօսքին մէջ անձ-նական դերանուն մը կամ ուրիշ բառ մը ստա-ցողը ո՛վ ըլլալը յայտնի կը ցուցնեն։ ինչ.* Գլուխս կը ցաւի , j'ai mal *à la* tête. Ոտքին հարուած մը ընդունեց , il a reçu un coup *au* pied . Պետրոս սը-րունքը կոտրեց , Pierre s'est cassé *la* jambe . Պէտք է ձեռքը կտրել , il faut *lui* couper la main , *փո-խանակ ըսելու* j'ai mal à *ma* tête , il a reçu un coup à *son* pied, *ևլն*։

*Հայերէն* ի զուր , ինչ որ ալ , որչափ եւ . . . պարապ է *բացատրութիւնը ֆրանսացւոց մէջ կը թարգմանուի* **avoir beau** . . . *ով։ ինչ.* «Ինչ որ ալ ընես ու ըսես պարապ է» , որոշած է Բարիզ մեկնիլ , vous *avez beau faire et beau dire* , il a résolu de partir pour Paris . «Որչափ եւ լայ պա-րապ է» , իւր աղաչանաց մտիկ չ'ըն ըներ , il *a beau* pleurer , on n'exaucera point ses prières ։

## ՍՈԿՐԱՏ

Սոկրատ, յոյն փիլիսոփայն, նշանաւոր էր իւր համբերատարութեան համար։ Օր մը գերւոյ մը դէմ բարկանալով ըսաւ անոր. «պիտի ծեծէի ըզքեզ, եթէ բարկացած չ'ըլլայի։» Ականջին ապտակ մը ընդունած ըլլալով՝ ըսաւ. «[1]Ի՞նչ [2]դժբաղդութիւն է [6]սաղաւարտ [5]գործածելու [4]ժամանակը [3]չ'գիտնալը (de ne pas savoir)։» Սոկրատ փողոցը (փողոցին մէջ) պատուաւոր մարդու մը հանդիպելով բարեւեց զայն, բայց մարդը բարեւը չ'առաւ (rendre le salut)։ Իւր հետ գտնուող բարեկամները ըսին փիլիսոփային «թէ այնչափ (si) բարկացած էին մարդուն անքաղաքավարութեանը, որ կուզէին անկէ վրէժ առնուլ։» Բայց Սոկրատ [2]պաղարիւնութեամբ [1]պատասխանեց. «Եթէ [3]ճամբայն (en chemin) ձեզմէ աւելի գէշ (1) հագուած մարդու մը [2]հանդիպիք, իրաւունք ունի՞ք անոր դէմ բարկանալու. եթէ ոչ, խնդրեմ, ի՞նչ իրաւունք ունիք բարկանալու մարդու մը դէմ որ ձեզմէ աւելի գէշ կրթուած է։»

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

[4]Երեք [5]օրէ [3]ի վեր [2]հիւանդ [1]եմ. յեռանդն

(1) Աւելի գէշ՝ երբ ածական ըլլայ pire կամ pis, երբ մակբայ ըլլայ, pis։

գլուխս կը ցաւէր , երէկ ստամոքսս կը ցաւէր , եւ այսօր ականջներս ու ակռայներս կը ցաւին .— Ինչո՞ւ համար բարեւը չ'առաւ . իրեն դէմ սրդողա՞ծ է . — Չ'եմ կարծեր որ իրեն դէմ սրդողած ըլլայ . այնչափ ազնիւ է որ իւր բարեկամները չը սրդողցըներ . — Ճանբայն գացած ատենս (chemin faisant) ոտքիս քարի հարուած մը ընդունեցայ . — Որչափ որ ալ զինքը զրպարտես պարապ է . ես այնչափ վստահ եմ իւր բարութեանը վրայ որ ձեր խօսքերուն չ'եմ հաւատար . — Իրաւունք չ'ունիք զինքը զրպարտելու . Նա այնչափ խելացի է. որ ձեր ըսածը չ'ըներ . — Խեղճ Յակոբ , ի զուր կ'աղաղակէ ու կուլայ . այսօր վիրաբոյժը անոր ոտքը պիտի կտրէ . — Դանակով մի' խաղար , տղայս . ձեռքդ պիտի կտրես (se couper) . — Խեղճ հանրիս , որ ութսուն տարեկան է , ինը տարիէ ի վեր կուրծքի ցաւէ կը տառապի . կը մտածեմ որ մեռնի , որովհետեւ կարծեմ թէ տառապիլը մեռնիլէն աւելի գէշ է . — [1]Ի զուր [3]գողերը կը [2]հալածեն , իրաւունք ունիմ կարծելու թէ երբեք չը պիտի կարենան զայնս բռնել . Նոքա այնքան ճարտար են որ դիւրաւ չ'են բռնուիր (se laisser saisir) . — Ի զուր կ'աղաղակէ թէ ոտքերը կը ցաւին . կուզեն զայն թատրոն տանիլ ։



## ԴԱՍ ԽԴ.

*Հայերէն կ'ըսենք* «կարգը» ձերն է խօսելու, «կարգը» իրենն է խաղալու, «կարգը» մերն է երգելու, *ևլն, Ֆրանսացիք այս տեսակ խօսքերն կը թարգմանեն* **c'est à . . . à** *ով. ինչ.* *C'est à* vous *à* parler, *c'est à lui* (*կամ à* elle) *à* jouer, *c'est à* nous *à* chanter, *ևլն*։

*Կամ նաեւ* **c'est à . . . de,** *որ տարբեր իմաստ ունի և կը նշանակէ* ձեզ, մեզ, իրեն, ինձ «անկ է,» «վայել է,» «պատշաճ է» *խօսիլ, ևլն*։ *Ինչ.* Ձեզ կը վայլէ խօսիլ, *c'est à* vous **de** parler. «Մեզ անկ է» գրել, *c'est à* nous **d'**écrire.

*Հայերէն* կրցածիս չափ, կրցածնուս չափ, կրցածին չափ, *ևլն. կը թարգմանեն Ֆրանսերէնի մէջ* de mon mieux, de notre mieux, de son mieux, *ևլն. ով*։

## ԶՄԵԶ ՇՐՋԱՊԱՏՈՂ ԿԵՆԴԱՆԻՔ

*[1]Եթէ իմ [3]մարմնէս [2]անցնիմ դէպ շրջապատող ուրիշ մարմնոց, ոչ միայն շատ մը ուրիշ [1]մարմիններ կը տեսնեմ նման իմինիս, այլ եւ ամէն կողմ*

(de tous côtés) զանազան կենդանիներ կը տեսնեմ։ Ոմանք (les uns) չորս ոտքով (à quatre pieds) կը քալեն, այլք թեւեր ունին օդին մէջ թռչելու համար, ուրիշներ լուղակներ ջրին մէջ լողալու համար։ Այս կենդանիներէն, ոմանք մեզ կը ծառայեն բեռներ կրելու, ինչպէս ձիները եւ ուղտերը. ոմանք (les autres) երկիրը մշակելու, ինչպէս եզները. այլք, ինչպէս մաքիները, զմեզ կը սնուցանեն իրենց կաթով եւ զմեզ կը հագուեցնեն իրենց բուրդով։ Ճճի մը, մրջիւն մը, մուն մը կը ցուցնեն հարիւր անգամ աւելի արուեստ քան թէ ամենէն աւելի կատարեալ ժամացոյցը։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Ի զուր ամէն կողմէն կը պտտայի. Պ. անօրէնին անկ է գրել նամակը. եղբայրս (c'est mon frère qui) գրեց զայն. — Մենք կրցածնուս չափ երգեցինք. հիմայ կարգը ձերն է երգելու. — Ձեր եղբօր կը վայելէ հիւրերը ընդունիլ, որովհետեւ նա ձեզմէ աւելի տարիքոտ է. — Ո՛ն, բարեկամս, պարելու կարգը ձերն է. — Խնդրեմ, ներեցէք ինձ. աչքս կը ցաւի. այս երեկոյ բարեկամի մը հետ խօսած ատենս (en parlant) աչքս մուն մը մտաւ. — Ձեզ չ՚վայլեր խօսիլ. ձեր քրոջ անկ է խօսիլ, որովհետեւ նա ձեզմէ աւելի տարիքոտ է. — Կ՚ըսեն թէ այս մարդը միայն կաթով կը սնանի. — Մենք երեք ժամէ ի վեր կը պտըտինք. հիմայ կարգը ձերն է պտըտելու. — Պ. Յովհաննէս, ձեզ

անկ է ձեր հօրեղբօր դատը պաշտպանել, որովհետեւ դուք իր ազգականն էք. — Կրցածիս չափ պիտի պաշտպանեմ զայն, որովհետեւ վստահ եմ թէ անմեղ է. — Երգելու կարգը ի՞մս է. Լա՛ւ. կրցածիս չափ պիտի երգեմ. — Օ՛ն, լիճէն լողալով (à la nage) անցնելու կարգը ձերն է. — Շատ աղէկ. կրցածիս չափ պիտի լողամ։



## ԴԱՍ ԽԵ.

Հայերէն կ'ըսեմք այս ինչ բանը այս ինչինն է, այս տեսակ խօսքերուն մէջ գտնուող էական բայէն առջի դիմականը կամ դերանունը տրական հոլով կը դնուի։ Ինչ. Այս գիրքը քրոջս է, ce livre est *à* ma sœur. Այս ձին որո՞ւնն է, *à* qui est ce cheval? Այս տետրակը իմս, քուկդ, իրենն է, ce cahier est *à* moi, *à* vous, *à* lui.

Ինչպէս ուսանողն տեսաւ, շատ անգամ թէ շաղկապը Ֆրանսերէնի մէջ չ'թարգմանուիր։ Ասի այն պարագային մէջ տեղի կ'ունենայ երբ թէ շաղկապէն առջը հարցական մակբայ մը կամ դերանուն մը գտնուի, զոր օրինակ ի՞նչպէս,

comment, ի՞նչ, quoi, ո՞վ, qui, ո՞ր, ի՞նչ, quel, ո՞ւր, où, *ուր*:

## ՏԱՆՁԵՆԻՆ

*Ագարակապետ մը տանձենի մը ունէր որ ընտիր պտուղներ կուտար եւ որոց համը շատ հաղուագիւտ էր: Իւրաքանչիւր տարի, ագարակին տէրոջը հաճոյք ընելու համար, անոր կ'ընծայէր այս տանձերով լի կողով մը:*

*Ագարակատէրը ընչաքաղց եւ յափշտակասէր էր:*

*«Ստուգիւ, ըսաւ օր մը, շատ բարեմիտ եմ որ* (je suis bien bon de . . .) *կողով մը տանձով կը գոհանամ (գոհանալու), եւ դեռ շնորհակա՛լ ըլլալու եմ... ծառը իմս է, քանի որ իմ վերաբերող ագարակի մը մէջ է. զայն պիտի հանեմ* (enlever) *եւ պարտիզիս մէջ պիտի դնեմ: Այսպէս, բոլոր տանձերը, առանց բացառութեան, իմս պիտի ըլլան:»*

*Ըսածը ըրաւ: Բայց ծառը այնչափ ծեր էր որ առանց վնասի* (inconvénient) *տեղափոխութեան չ'էր կրնար տոկալ. առաջ որ այնչափ պտղաբեր էր* (tout fertile qu'il était auparavant), *չորցաւ եւ այլ եւս պտուղ չ'տուաւ:*

*Ագարակին տէրը, իւր ճգանց անյաջողութիւնը տեսնելով, անիծեց* այն *յանցանքը* (faute) *զոր գործած էր, եւ զղջաց իւր ընչաքաղցութեան վըրայ:*

# ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Այս տունը որո՞ւնն է, տիկին. — Ճշդիւ (au juste) չ'եմ գիտեր թէ ո՛ւմ է այս տան տէրը, բայց կարծեմ թէ թիւ 10 (... numéro dix) բնակող Թըղթավաճառինն է՝. — Խնձորով ու Նուռերով լեցուն այս կողովը որու՞նն է. — Գ. Արշակինն է. մեր վարժարանի Գ. տնօրէնին պիտի ղրկէ զայն այս երեկոյ. — Որչա՞փ բարեմիտ էք. ամէն բանի (ամէն բան) կը հաւատայք. զձեզ ծաղրելու համար է որ (c'est pour . . . que) ասիկա ըսաւ. — Այս ծառը որու՞նն է. — Ո՞րը. ա՞յս թէ (կամ) ա՞յն. այս իմս է, այն քրոջս է. — Հանեցէք զայնս եւ ուրիշ տեղ (ailleurs) տնկեցէք. — Այս ծաղիկները որո՞ւ են. — Եղբօրս են. — Ըսէք իրեն որ զանոնք ամէն երեկոյ ջրէ, ապա թէ ոչ երկու օրէն պիտի չորնան. — Առաջ որ տանձենիս այնչափ պտղատու էր, երկու տարիէ ի վեր բնաւ պտուղ չի տար. չ'եմ գիտեր թէ ինչ է պատճառը (quelle en est la cause). — Ի՞նչ է պատճառը. պատճառը այն է որ (c'est que) տարիէ մը ի վեր չ'էք մշակած զայնս, յանցանքը որո՞ւնն է. —Յանցանքը իմս է, կամ մանաւանդ (plutôt) եղբօրս է, որովհետեւ նա՛ (c'est lui qui . . .) կը խնամէ զայն։



## ԴԱՍ ԽՋ.

*Վաճառականական գրոց մէջ գործածուած* անուանց տակ *բառերն՝ Ֆրանսերէնի մէջ կը թարգմանուին* **sous la raison de** *ով. ինչ.* Պատիւ ունիմք ձեզ իմացնելու թէ Ց. եւ Ս. «անուանց տակ» զոհարեղինաց վաճառատուն մը բացած եմք, nous avons l'honneur de vous prévenir que nous avons formé une maison de bijouterie *sous la raison de* H. et V.

Վաճառատուն *վաճառականական լեզուաւ շատ անգամ կը թարգմանուի* maison (*համա-ռօտ.* maison de commerce *ի*)։

Վերը (*գրուած, նշանակուած*) *կ'ըսուի* ci-dessus, ստորեւ՝ ci-dessous, դիմացը՝ ci-contre.

## ՎԱՃԱՌԱՏԱՆ ՄԸ ՀԵՏ ԹՂԹԱԿՑՈՒԹԻՒՆ ՄԸ ԲԱՆԱԼՈՒ ՀԱՄԱՐ

*Տեարք*,

Կը *համարձակիմք* (prendre la liberté de) *մեր շրջաբերականը ղրկել ձեզ իմացնելու համար թէ Հ. եւ Վ. անուանց տակ վաճառատուն մը բացած եմք*։ Կը *խնդրեմք որ* (nous vous prions de . . .)

ձեր յանձնարարութեամբք պատուէք ( պատուել ) զմեզ ։ Կը [1]յուսամք [2]թէ [5]գործերու վրայ ունեցած [3]մեր [4]ծանօթութիւններն եւ մեր ընդարձակ յարաբերութիւններն մեծ օգուտներ (avantage) պիտի կարենան ընծայել մեր թղթակցաց ։ Պիտի ջանամք, իւրեանց շահերուն համար ամենամեծ ուշադրութեամբ՝ (par une . . .) իւրեանց վստահութեան (վստահութիւն) արժանանալ ։ Ըստորեւ պիտի գտնէք մեր վաճառատան ստորագրութիւնը ։

Պատիւ ունիմք ըլլալու, եւլն։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

[4]Ներկայիւս (par la présente 1) պատիւ [1]ունիմք [2]ձեզ [3]իմացնել [5]թէ Ց. եւ Մ. անուանց [10]տակ [9]ճերմակեղինաց [8]վաճառատուն [7]մը բացած [6]եմք. — Ստորեւ պիտի գտնէք անուններն այն ապրանաց՝ զորս շատ չ'ըներ(2) Բարիզէն բերել տուած եմք. — Ա. եւ Ն. ընկերութիւնը մեծ (gros) յանձնարարութիւններ ըրած է մեզ ամսոյս հինգ թուականաւ նամակաւ մը . — Այս յանձնակատարը գործերու վրայ ծանօթութիւններ ունի , ինչ որ (ce qui) , կարծեմ, մեծ օգուտներ պիտի ընծայէ մեզ . — Գրոյս դիմացը պիտի գտնէք ծախուց մանրամասնութիւնները . — Վերը ըսի թէ ամսոյս տասնին մեզ ղըր-

(1) Par la présente համառօտութիւն par la présente *lettre* ի. 2. Տես էջ 92։

կուած ապրանքներին ապականուած (avarier) էին ։— ՚ի բոյս դիմացը պիտի գտնէք մեր վարժարանի քննութեանց մանրամասն ցուցակը ։



## ԴԱՍ ԽԷ․

## Ք Ա Ղ

Անարդ մարդոց հետ խօսակցութեան մտնողը՝ կը զղջայ խօսած ըլլալուն ․— Եղբայրս գինի շատ կը սիրէ ․ մէկ չնչով գաւաթ մը գինի կրնայ պարպել ․— Քնացած քանի մը ժամերուս վրայ զղջացի ․ կրնայի զանոնք օգտակարապէս գործածել ․— Աշխատութիւնն է (c'est) որ զմեզ զօրաւոր կ'ընէ (rendre) բարեկամս, եւ ոչ անգործութիւնը, ինչպէս կը կարծէք ․— Կը ցաւիմ որ ստիպուած եմ ձեր խնդիրքն մերժել, բայց ձեռքէս եկածին չափ պիտի ջանամ ուրիշ պաշտօն մը գտնել ձեզ համար ․ —Պէտք է որ ձեր հօր կամաց հպատակիք, եթէ կ'ուզէք երջանիկ ապագայ մը պատրաստել ձեզ համար (vous préparer) ․— Տիկին իշխանուհին շատ չ'ըներ Բարիզէն վերադարձաւ ․ քիչ մը առաջ իրմէ նամակ մը առացայ ․ — Մի ըսէք երբէք ․ « Ձեր խորհրդոց պէտք չ'ունիմ ․ ես կարող եմ ինքզինքս կառավարել ․» որչափ խոնարհ եւ խոհեմ ըլլայք, այնչափ աւելի երջանիկ կ'ըլլայք ․— Քիչ մը առաջ Գ․ Ար–

տաշէսին հանդիպեցայ . զինքը կը ճանչնա՞ք . — Այո . աղէկ մարդու կնկան . անցեալ օր զինքը բարեւեցի, բայց բարեւս չ'առաւ . ինծի դէմ սրդողա՞ծ է արդեօք (est-ce que ով կամ բեակ. անց. ով։) — Ի՞նչ ունիք. հիւանդ կ'երեւիք. ակռայնի՞դ կը ցաւի . — Ոչ, երէկ աչքերս կը ցաւէին . այսօր սիրտս կը ցաւի . — Դեղ առնելու էք. — Ի զուր կը խրատեմ զինքը դեղ առնելու . երբէք խորհրդոյս հետեւիլ չ'ուզեր . — Պ. Ցակոբ, խօսելու կարգը ձերն է . — Խօսելու կարգը իմս է, բայց Պ. Նախագահին անկ է խօսիլ . — Ոմանք լողալով լիճէն անցան, ոմանք նաւակներով։



## ԴԱՍ ԽԸ.

Բանի մը կարեւոր եղածը, պատճառ, բաւական ըլլալու չափ բան *նշանակելու համար կը գործածուի* **de quoi** *որ հայերէն* իք *մասնիկներն կը համապատասխանէ շատ անգամ (ուտելիք, խմելիք, հագնելիք, եւն.)։ Ինչ.* Գրելու համար «պէտք եղածը» տուէք ինձ, donnez-moi *de quoi* écrire. սրդողելու «պատճառ», «բան» չը կայ . il n'y a pas *de quoi* se fâcher. Շնորհակալ ըլլալու «բան»

չը կայ. il n'y a pas *de quoi* me remercier (կամ համառօտելով il n'y a pas de quoi, և կամ պարզապէս pas de quoi). ուտելիք եւ խմելիք չ'ունիմք, nous n'avons pas *de quoi* manger et boire.

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ՄԱՐՄՆՈՑ ԱՆԴԱՄՆԵՐՆ

Օր մը մարդկային մարմնոյ անդամները՝ իրարու (se) ծառայելէ ձանձրացած՝ որոշեցին ոչ եւս (ne . . . plus) իրարու ծառայել։ Ոտքերը կ'ըսէին. «ինչո՞ւ համար մենք միայն պիտի կրեմք ուրիշներուն բեռը. ձեզի համար ոտքեր առէք, եթէ քալել կ'ուզէք։» Ձեռքերը կ'ըսէին. «ինչո՞ւ պիտի աշխատիմք ուրիշներուն համար. ձեռքեր առէք ձեզ համար, եթէ պէտք ունիք (անոնց պէտք ունիք)։» Բերանը մռմռաց. «շատ խենդ եմ ստուգիւ որ (je suis bien fou en effet de . . .) ստամոքսին համար անուշ կը ծամեմ (ծամել), որպէս զի ամենայն հանգստութեամբ մարսէ զայն. այն որ բերանի պէտք ունի՝ թող բերան մը (անկէ հատ մը) գտնէ։» Աչքերն ալ չ'ուզեցին այլ եւս ամբողջ մարմնոյն համար հսկելու։ Այս կերպով խօսեցան նաեւ մարմնոյն բոլոր միւս անդամներն։ Ի՞նչ եղաւ ասոր (en) հետեւանքը։ Որովհետեւ (comme) մարմնոյն անդամներէն եւ ոչ մին կ'ուզէր (չ'էր ուզեր) իւր պաշտօնն կատարել, ամբողջ մարմինը հետզհետէ տկարանալ սկսաւ։

Անդամները՝ տեսնելով որ իրենց կորուստը մօտա-լուտ էր, յանցանքնին (tort) ճանչցան (reconnaître) եւ առաջուան պէս սկսան դարձեալ իրարու ծա-ռայել։

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

[2]Ալ եւս ուտելիք [1]չ'ունիմք, տիկին. մեզի ուտելիք եւ խմելիք բերել տուէք, եթէ կը հաճիք (s'il vous plaît). —Սրդողելու բան չ'կայ. դուք բարե-կամներ էք.—Սրդողելու բան չ'կա՛յ. բայց բարեկամս, գիտէ՞ք ի՛նչ բան (ce qui) կը սրտմտեցնէ զիս. այն թէ (c'est que) չ'ուզեր յանցանքը ճանչնալ. — Կը զար-մանամ թէ ի՛նչպէս կրցաւ այնչափ լեզուներ սով-րիլ. — Զարմանալու բան չը կայ. աշխատութիւնը ամէն բանի (ամենուէն բան, tout) կը յաղթէ. — Խեղճ մարդ, կ'ըսեն թէ ուտելիք եւ հագնելիք ան-գամ (même) չ'ունի. — Ստուգիւ, շատ բարեմիտ եմ որ ամէն բան (ամէն բան) կը հաւատամ. — Եթէ այս տունը գնելու ստակ (de quoi acheter) ու-նենայի, զայն պիտի գնէի. շատ լաւ գտայ զայն. — Ի՞նչպէս պիտի անցնեմք ժամանակնիս այսօր. — Ահաւասիկ գրքեր, պատկերներ. ահաւադիկ նարտ, խաղալու թուղթ, թռուցիկներ. վերջապէս մինչեւ երեկոյ զբօսնելու համար պէտք եղածն ու-նիմք. — Պարտքս վճարելու ստակ չ'ունիմ. չ'եմ գիտեր ի՛նչ (que) պատասխանել. — Մտածելու բան չը կայ, պարտքերնիդ վճարելու համար պէտք ե-ղած ստակն փոխ կուտամ ձեզ. — Մեծապէս շնոր-

*հակալ եմ, բարեկամս. — Շնորհակալ ըլլալու բան չը կայ. — Ուտելի՞ք ունի՞ք. — Ուտելիք ունիմք, բայց խմելիք չունիմք:*



## ԴԱՍ ԽԹ.

Մինչեւ (*սա չափի գումար*) *կը թարգմանուի* **jusqu'à concurrence** *կամ* **jusqu'à la concurrence de** ... *օր. ինչ.* մինչեւ տասը հազար Ֆրանք վճարեցէք, vous rembourserez *jusqu'à la concurrence de* dix mille francs.

Առժամանակեայ կերպով դադրեցնել *կը թարգմանուի* **suspendre**: *ինչ.* իւր վճարումներն «դադրեցուց,» il a *suspendu* ses payements. —«Լա Դիւռքի» լրագիրն երկու ամսուան համար «դադրեցաւ», խափանուեցաւ. le journal La Turquie a été *suspendu* pour deux mois.

Պայմանաժամը լրանալ, վճարաժամը հասնիլ *կ'ըսուի* **échoir** (*ընդ. ածն.* échu): *ինչ.* թիւ 5 փոխանակագիրս պայմանաժամը լրացաւ. mon n.º 5 *est échu.*

## ԱՌ ՍԵՂԱՆԱՒՈՐ ՈՄՆ

Տէր ,

Մեր Թուլուզի սեղանաւորը իւր վճարումնե-
րը դադրեցուցած ըլլալով՝ կուգամ ձեզ հարցնել թէ (եթէ) կ'ուզէք մեր վաճառատան յետ յարաբերութեան (en relations) մանել , եւ թէ կրնայք այս վայրկեանիս (en ce moment) մինչեւ տասը հազար ֆրանքի փոխանակագիր զեղչել մեզ , որոց պէտք ունիմք վճարելու համար այն փոխանակագիրները զոր կ'սպասեմք Պուէնոս-Այրէսէն ։

Եթէ այս կարգադրութեան հաւանութիւն (votre adhésion) կուտայք , հաճեցէք (ուզեցէք) առաջ պատասխան մը շնորհել (favoriser de . . .) մեզ, եւ ընդունիլ մեր սրտագին ողջոյններն ։

Ա. Մախոխեան

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Ս. եւ Հ. ընկերութիւնն ամսոյս տասն եւ հինգ թուականաւ շրջաբերականաւ մը կ'իմացնէր մեզ թէ Զմիւռնիոյ մէջ գոհարեղէնաց վաճառատուն մը բացած են . — Ինչո՞ւ համար Գ. եւ Ա. ընկերութիւնը վճարումներն դադրեցուց . — Որովհետեւ սնանկացաւ . Իրենց անունններն այս օրուան լրագրին մէջ պիտի երեւին . — Աղէկ միտքս ինկաւ . Իրա՞ւ է որ Քուաքէ Օտխանճալը երեք ամսուան համար խափանուած է . — Չ'եմ գիտեր . — Գիտէ՞ք

*թէ ի՞նչ է Գ. եւ Ֆ. ընկերութեան սնանկութեան պատճառը. — Կ'ըսեն թէ բամպակի վրայ* (en) *մեծ շահադիտութիւններ այս սնանկութեան անմիջական պատճառն եղած են. — Հաճեցէք մեզ իմացընել թէ կրնա՞յք մինչեւ ութը հարիւր չիլինի փոխանակագիր ղրկել մեզ. — Մեր թիւ* (numéro) 8 *փոխանակագրին պայմանաժամը ութը օրէ ի վեր լրացած է. — Եթէ մեր առաջարկը կ'ընդունիք, հաճեցէք արագ պատասխան մը շնորհել մեզ։*



## ԴԱՍ Ծ.

*Հայերէն* Երէ քիչ մը *բացատրութիւնը Ֆրանսերէնի մէջ կը թարգմանուի* **pour peu que** *օր. ինչ.* «Երէ քիչ մը» հոգ տանիս, գործը պիտի յաջողի, *pour peu que* vous en preniez soin, l'affaire réussira. «Երէ քիչ մը» այս բանին վրայ իրեն խօսիք, զայն պիտի ընէ, il le fera, *pour peu que* vous lui en parliez.

*Աւելորդ է ըսել թէ* pour peu que *էն ետքը եկող բայը Ստորադասական եղանակ կը դրուի, ինչպէս վերի օրինակներուն մէջ կը տեսնուի։*

### ՀՈՂԱԳՈՐԾԻՆ ՍՐՋԱՆԿՈՒԹԻՒՆԸ

*Երկիրը երբէք ապերախտ չ'է. նա միշտ իւր*

պտուղներով կը մնուցանէ զանոնք որ խնամօք կը մշակեն զայն. իր ինչքերը նոցա միայն (ne . . qué) կը զլանայ որ կը վախնան իրենց յոգնութիւնը (peine) անոր տալէ: Երկրագործները որչափ աւելի զաւակ ունենան այնչափ աւելի հարուստ կ'ըլլան, որովհետեւ իրենց զաւակները, իրենց մատաղ հասակէն սկսեալ (dès leur . . .), կ'սկսին անոնց (զանոնք) օգնելու: Ամենէն պզտիկները ոչխարները արօտավայրերը (տրակ.) կը տանին (կ'առաջնորդեն). միւսները որ աւելի մեծ են, մեծ հօտերը կը տանին արօտէն. ամենէն տարիքոտները իրենց հօր հետ կը մշակեն: Բոլոր ընտանեաց մայրը պարզ կերակուր մը կը պատրաստէ իր՝ ամուսնոյն եւ իր սիրելի զաւակաց. նա հոգ կը տանի (avoir soin de...) կթելու իր կովերը եւ մաքիները. մեծ կրակ մը կը շինէ (faire), որոյ շուրջը (autour duquel) բոլոր ընտանիքը՝ անմեղ եւ խաղաղակեաց (paisible) կ'երգէ ամէն երեկոյ:

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Եթէ քիչ մը աշխատիք, պիտի յաջողիք դասերնիդ գոց սորվելու. — Ի՜նչ զարմանալի (singulier) մարդ. եթէ քիչ մը զինքը որդողցնեն, կ'ըսկըսի (se mettre à) լալու. — Եթէ քիչ մը ազատութիւն տայք իրեն խօսելու, զամէնքը կը քննադատէ. — Եթէ քիչ մը ինծի օգնէիք, իմ ձեռնարկիս մէջ պիտի յաջողէի. — Եթէ քիչ մը հոգ տա-

նիք այս տունկերուն, քիչ ժամանակի մէջ (en) պիտի զարգանան. — Օդը շատ ցուրտ է, կարծեմ. կամ, գէթ, ես շատ կը մսիմ. կ'աղաչեմ, աղէկ կրակ մը չինեցէք. — Եթէ քիչ մը երգել սկսէի, ամէն կողմէն կը պոռային. բաւական է, բաւական. շնորհակալ եմք. իսկ (quant à...) ես, պաղարիւնութեամբ կը պատասխանէի. բան մը չ'է. — Եթէ քիչ մը պարեմ կը քրտնիմ. մինչդեռ եղբայրս կրնայ երեք ժամ շարունակաբար պարել առանց քրտնելու. — Եթէ քիչ մը իրենց հետ վիճաբանիք, նախատինք կ'ուղղէ ձեզ, այնպէս որ կը զղջայք իրեն հետ խօսած ըլլալնուդ (ան. անց)։



## ԴԱՍ ԾԱ.

Ժամանակին, ի պատեհ ժամու կը թարգմանուի à temps, à point nommé: Օրին. Vous n'arrivez pas *à temps* pour le voir. — Il alla *à point nommé,* comme le combat allait commencer.

Հայերէն շատ անգամ բային ուժգնութիւն տալու համար նոյն բայն քովէ քով կը կրկնեն։ Թրանսացիք այս պարագային մէջ յաճախ բայէն առաջ **à force de** կը դնեն։ «Աշխատելով աշխատելով» ամեն տեսակ խոչըն-

դոտնէրու յաղթեց · *à force de* travailler, il surmonta toute sorte d'obstacles.

### ՅԱՆՁՆԱՐԱՐՈՒԹԻՒՆ ՄԸ

*Տեարք ,*

*Ձեր շրջաբերականը ժամանակին մեզ հասաւ , եւ տրամադիր ենք ձեզ հետ թղթակցութիւն մը բանալու , որովհետեւ պատճառ ունինք* (avoir raison de) *գոհ չըլլալու մեր Լոնտոնի արդի թղթակցէն ։ Այսպէս , հաճեցէք մեզ ղրկել , փորձի համար , ի ստորեւ* գրեալ *ապրանքները ։ Աղէկ պատրաստեցէք զանոնք եւ առաջին առթիւ* (par la...) *ղրկեցէք զանոնք ։*

*Այսինքն՝* (savoir)

| | | |
|---|---|---|
| 6 *կրոսս*(1) | (grosse) | *աղէկ ածելի , փղոսկրէ կոթ* |
| 3 *նոյն* | ( idem ) | *հասարակ , սեւ նոյն* |
| 4 *նոյն* | | *գմելի, երկու բերանով* (à deux...) *եղջերուի եղջիւրէ կոթ* |
| 2 *նոյն* | | *հասարակ* |
| 10 *տուզինա* | | *խզահան , աղէկ* |
| 2 *նոյն* | | *հասարակ* |

---

(1) *Յիշեցէք թէ* չափ *եւն ցուցնող բառերէն ետքը* **de** *կը դրուի. — Մէկ կրոսն* 12 *տուզինա է։*

| | |
|---|---|
| 3 տուզինա | սկոլախակաւ ընչառաուի, ազնիւ (élégantes) |
| 3 նոյն | հասարակ |
| 6 կրօսա | Պրուքման մատիտ |

Եթէ այս յանձնարարութիւնը մեր յուսացածին պէս ըլլայ (répond à notre attente) քիչ ատենէն աւելի մեծ (considérable) յանձնարարութիւններ պիտի ունենանք ։ Գումարին (montant) համար կրնայք երկու ամսուան համար փոխանակագիր մը քաշել մեր վրայ ։

Մնամք, եւն.

. . . . . . .

## ԿՐԹՈՒԹԻՒՆՔ

Ներկայ ամսոյ տասնեւհինգ թուականաւ [3]նամակնիդ [2]ժամանակին [1]ընդունեցայ ։ — Վերը գրուած ապրանքները Ո. եւ Հ. [5]ընկերութեան [1]պէտք է [2]ղրկել [3]առաջին [4]առթիւ ։ գումարին համար կրնայք երեք ամսուան (1) փոխանակագիր մը քաշել ։ — Վարը գրուած ապրանքները երկու

(1) Փոխանակագրի մը վճարման համար երեսուն օրուան պայմանաժամը կը կոչուի usance. այսպէս կ'ըսեն à double usance, à triple usance, Երկու ամսուան, Երեք ամսուան (փոխանակագիր) ։

չարաթէն միայն կրնայք ընդունիլ. — Աղաչելով աղաչելով յաջողեցաւ իւր փափաքած պաշտօնը ձեռք ձգել (obtenir). — Դարբնելով դարբնելով մարդ (on) դարբին կ'ըլլայ (devenir). — ²Հիւանդը ¹ խնամելով խնամելով պիտի յաջողիք զայն բժշկելու. —Կարդալով կարդալով, աղէկ ընթերցանութիւն մը պիտի ունենայք. —Չ'է՞ք հաւատար թէ գրելով գրելով աղէկ գիր (écriture) մը կրնայք (ստ. ներկ) ունենալ. — Յարմար ժամանակին կուգայք վէճերնիս դատելու համար. Խօսելով խօսելով ձայնս մարեցաւ. Գլուխ կը փորձեմ զինքը համոզել թէ առանց առաքինութեան մարդ (on) երջանիկ չը կրնար ըլլալ։



## ԴԱՍ ԾԲ.

### ԹԷ ԻՆՉ ԿԵՐՊՈՎ ՊԷՏՔ Է ՀԱՂՈՐԴԵԼ ԴԷՊՔ ԼՈՒՐԵՐԸ

Պարոն Կ. — Ա՛, դո՞ւն ես (vous voilà !), բարի մանչս. ի՞նչպէս ես, ի՞նչ լուր (լուրեր) ունիս:

Մատակարարը. — Դէշ լուրեր, Տէր իմ. կաչաղակը մեռաւ:

Պրն. Կ. — Խե՜ղճ կաչաղակ: ինչո՞ւ մեռաւ:

Մատ. — Չափազանց կերաւ, Տէր:

Պրն. Կ. — Չափազա՛նց կերաւ. խեղկատակ (le drôle!)։ Ի՞նչ էր կերածը։

Մատ. — Ձիու միս, Տէր։ Ձիու միս կերած ըլլալուն համար մեռաւ։

Պրն. Կ. — Ո՞ւր կրցաւ գտնել՝ այդքան ձիու միս։

Մատ. — Ձեր հօր բոլոր ձիերը, Տէր։

Պրն. Կ. — Ի՜նչ, անո՞նք ալ մեռան։

Մատ. — Այո, Տէր. չափազանց աշխատցուցին (surmener) զանոնք։

Պրն. Կ. — Ինչո՞ւ համար զանոնք չափազանց աշխատցուցին, խնդրեմ։

Մատ. — Ջուր կրելու համար, Տէր։

Պրն. Կ. — Ջո՞ւր կրելու համար։ Ինչո՞ւ ջուր կը կրէին։

Մատ. — Է՜հ, Տէր իմ, կրակը մարելու համար։

Պրն. Կ. — Կրա՞կը. ի՞նչ կրակ։

Մատ. — Տէր իմ, ձեր հօր տունը այրեցաւ։

Պրն. Կ. — Հօրս տունը այրեցա՛ւ. տունը ի՞նչպէս բռնկեցաւ. (comment le feu prit-il à la maison?)

Մատ. — Կարծեմ թէ ջահերը պատճառ եղան։

Պրն. Կ. — Ջահե՞րը. ի՞նչ ջահ։

Մատ. — Ձեր մօր յուղարկաւորութեան առթիւ (à l'occasion de...)։

Պրն. Կ. — Ի՜նչ. մայրս մեռա՞ւ։

Մատ. — Ա՛հ, խեղճ տիկինը. վերջապէս չ'կրցաւ դիմանալ։

Պրն. Կ. — Ի՞նչ բանի (ի՞նչ) չ'կրցաւ դիմանալ։

Մատ. — Ձեր հօր մահուանը (մահը)։

Պրն. Կ. — Բայց, Տէր Աստուած, հա՞յրս ալ մեռաւ։

Մատ. — Այո, խեղճ մարդ. զայն իմանալուն (apprendre) պէս հիւանդ պառկեցաւ (ինկաւ)։

Պրն. Կ. — Ի՞նչը իմանալուն պէս (appris quoi?)

Մատ. — Գէշ լուրը, Տէր իմ։

Պրն. Կ. — Ի՛նչ. դեռ դժբաղդութիւն. դեռ գէշ լուր։

Մատ. — Այո, Տէ՛ր. ձեր դրամատունը սնանկացաւ, եւ հիմայ ստակ մը (սու մը) չէք արժեր։ Համարձակեցայ, Տէր, այս լուրը ձեզ տալու, որովհետեւ կարծեցի թէ կուզէիք (vous aimeriez à...) զայն իմանալ։



# ԲԱՌԱԳՐՔՈՒԿ

## ՀԱՄԱՌՕՏԱԳՐՈՒԹԻՒՆՔ

| | | | |
|---|---|---|---|
| [ար.] | արական | [յոգն.] | յոգնակի |
| [իգ.] | իգական | [հ. խ.] | հայցական խնդիր կառնէ |
| [հ. գ. խ.] | հայցական հոլով. գոյական խնդիր կառնէ | [ի. ա.] | իւր խնդիրէն առաջ |
| [ա. խ. ա.] | աներեւոյթ խնդիրէն առաջ | [գ. խ. ա.] | գոյական խնդիրէն առաջ |



# Ա.

### ԱՀԱ

Ագահ. avare.—ութիւն, avarice [իգ.]
Ագարակ. ferme [իգ.] — ապետ, fermier
Ագռաւ. corbeau [ար.]
Ադամանդ. diamant [ար.]
Ազգ. nation [իգ.] — ական, parent
Ազնիւ. noble
Ազնուութիւն. noblesse [իգ.]
Ախոռ. écurie [իգ.]
Ածելի. rasoir [ար.]
Ականջ. oreille [օրէյլ. իգ.]
Ակնոց. lunettes [իգ.]
Ակռայ. dent [իգ.]
Ահագին. énorme; terrible

Աղաւնի. pigeon [ար.] colombe [իգ.]
Աղէտ. désastre [ար.]
Աղէքսանդր. Alexandre
Աղտոտել. salir
Աղքատ. pauvre· — ացնել, appauvrir, rendre pauvre
Աղուէս. renard [ար.]
Աղօթք. prière [իգ.]
Ամերիկայ. Amérique [իգ.]
Ամէն. tout [ար. յոգն. tous]. — ուրեք, partout
Ամոքել. adoucir, apaiser, tempérer, mitiger
Ամուսին. époux [ար.], mari [ար.]
Ամուսնանալ. se marier
Ամպ. nuage [ար.]
Այգի. vigne [իգ.]
Այնատեն. alors
Այնքան. aussi; si; tant, autant
Այսինքն. c'est-à-dire, savoir
Այրեցեալ. [գօտի]· [la zone] torride
Այրել. brûler
Այցելութիւն. visite [իգ.]· — տալ visiter [հ. գ. ի.], rendre visite [գ. ի. ա. à]
Անարգ. méprisable, abject, vil. —ել mépriser, détester
Անապատ. désert [ար.]
Անգամ. fois [իգ.]
Անգթութիւն. cruauté [իգ.]
Անգղիա. Angleterre [իգ.]· —ցի, anglais
Անդադար. sans-cesse, sans relâche
Անդամ. membre [ար.]
Անդունդ. abîme [ար.]
Անդրանիկ. aîné
Աներեւութանալ. disparaître
Անիւ. roue [իգ.]
Անխտրաբար. indistinctement
Անծանօթ. inconnu

Անկար. infirme· —ող, incapable [ի. ա. de]
Անկեղծ. sincère· —ութիւն, sincérité [իգ.]
Անհանգստութիւն. indisposition [իգ.]
Անձրեւ. pluie [իգ.]· —գալ, pleuvoir
Անմահացնել. immortaliser
Անմիջական. immédiat
Անմիջապէս. aussitôt, immédiatement
Անմիտ. niais, nigaud
Անյապաղ. sans délai
Անյաջողութիւն. insuccès [ար.]
Անոնք. ils; elles; eux. —որ, ceux qui [իգ.] celles qui
Անջրդի. sec [իգ. sèche], aride
Անցնիլ, անցնել. passer
Անփորձ. inexpérimenté, inexercé
Անքաղաքավար. impoli. —ութիւն, impolitesse [իգ.]
Անօթի (ըլլալ). [avoir] faim [ֆէն]
Անօթութիւն. faim [իգ.]
Աշխարհ. monde [ար.]· —ացոյց, carte [իգ.]. —ագրութիւն, géographie [իգ.]
Աչք. œil [յոգն. yeux]
Ապա. puis, ensuite, après; donc· —թէ ոչ, sinon, autrement
Ապագայ. avenir [ար.]
Ապականել. gâter, détériorer, abîmer
Ապակի. vitre [իգ.] carreau [ար.]
Ապացոյց. preuve [իգ.]
Ապերախտ. ingrat
Ապտակ. soufflet [ար.]
Ապրանք. marchandise [իգ.], article [ար.]
Առած. maxime [իգ.]
Առակ. proverbe [ար.], fable [իգ.]
Առաջարկ. proposition [իգ.] offre [իգ.]
Առատ. abondant· —ութիւն, abondance [իգ.]
Առարկայ. objet [ար.]

Առաքինի. vertueux
Առաքինութիւն. vertu [իգ.]
Առիթ. occasion [իգ.]
Առնել. prendre. փոխ —, emprunter
Առողջութիւն. santé [իգ.]
Առջեւ. devant [հ. ի.]
Ասեղ. aiguille [իգ.]
Ասիա. Asie [իգ.]
Ասղանոց. étui [ար.] à aiguilles
Աստղ. astre [ար.] étoile [իգ.] — ագէտ astrologue
Աստուած. Dieu. —ային, divin. Տէր — bon Dieu!
grand Dieu! miséricorde!
Ատաղձագործ. charpentier [ար.]
Ատամնաքոր. cure—dents [ար.]
Ատենապետ. président [ար.]
Արաբացի. arabe
Արագ. rapide — ութիւն, rapidité [իգ.]
Արագիլ. cigogne [իգ.]
Արարողութիւն. cérémonie [իգ.]
Արգասաբեր. fertile, fécond
Արգասիք. effet [ար.]
Արդար. juste. — ութիւն, justice [իգ.]
Արդի. actuel
Արթննալ. s'éveiller, se réveiller
Արժանանալ. mériter [հ. գ. ի.]
Արժանի. digne [ի. ա. de]. — ք, mérite [ար.]
Արժել. valoir
Արժէք. valeur [իգ.]
Արծիւ. aigle
Արձակ. prose
Արմատ. racine [իգ.]
Արոյր. laiton [ար.]
Արուեստ. art [ար.]
Արջ. ours [ար.]

Արջառ. bétail [ար. յոգն. bestiaux]
Արտ. champ [շատ. ար.], campagne [իգ.]
Արտադրութիւն. production [իգ.]
Արտայայտել. exprimer, énoncer
Արտասովոր. extraordinaire
Արցունք. pleur [ար.] larme [իգ.]
Արքայ. roi [ար.]
Արեւակէզ. brûlé par le soleil
Արօտ ։ — ավայր. pâturage [ար.] prairie [իգ.]
Աւազ. sable [ար.]. — ուտ, sablonneux
Աւաղ. hélas!
Աւելնալ. augmenter
Աւելցնել. ajouter; augmenter; joindre
Ափրիկէ. Afrique [իգ.]

# Բ

Բաժակ. coupe [իգ.] tasse [իգ.], verre [ար.]
Բաժնել. diviser, partager; séparer
Բաղդ. sort [ար.] destin [ար.]; fortune [իգ.]
Բաղդատել. comparer. — ի, comparable [գ. ի. ա. à]
Բաղկանալ. consister, être composé
Բամպակ. coton [ար.]
Բանալ. ouvrir; découvrir. — ի clef [քլէ. իգ.]
Բանաստեղծ. poète. — ութիւն, poésie [իգ.]
Բառ. mot [ար.]. — ագիրք, dictionnaire [ար.]
Բարեբաղդ. heureux. — աբար, heureusement
Բարեկամ. ami. — ական, amical
Բարեհաճիլ. vouloir bien, daigner
Բարեմիտ. bon, ingénu
Բարիզ. Paris
Բարկանալ. se fâcher, se mettre en colère, s'emporter
Բարձր. haut [հօ.]. — ութիւն, hauteur [իգ.]

**Դառնալ.** tourner, se tourner. *բան մը*—, devenir
**Դաս.** leçon [*իգ.*], classe [*իգ.*] — *արան*, classe [*իգ.*] — *ատու*, maître, professeur
**Դատ.** procès [*ար.*], cause [*իգ.*]. — *ել*, juger. — *ավարել*, plaider. — *աւոր*. juge. — *ապարտել*, condamner
**Դատարկապորտ.** oisif, flâneur, vagabond
**Դար.** siècle [*ար.*]
**Դարան.** armoire [*իգ.*]
**Դարբնել.** forger
**Դեղ.** remède [*ար.*], médicament [*ար*], médecine [*իգ.*] — *ագործ*, pharmacien [*ար.*], apothicaire [*ար.*] — *ագիր*, ordonnance [*իգ.*]
**Դեղին.** jaune
**Դերձակ.** tailleur [*ար.*]
**Դէպ.** vers [*Հ. ի.*]
**Դէպք.** accident [*ար.*], événement [*ար.*]
**Դժբաղդ.** malheureux.—*ութիւն*, malheur [*ար.*]
**Դիակն.** cadavre [*ար.*]
**Դիմել.** s'adresser, recourir; accourir
**Դիւրատար.** portatif
**Դողալ.** trembler
**Դուքս.** duc [*ար.*]
**Դպչիլ.** toucher
**Դպրոց.** école [*իգ.*] — *ական*, écolier
**Դռնապան.** portier, concierge
**Դրամ.** argent [*ար.*], monnaie [*իգ.*]. — *ապանակ*, porte-monnaie [*ար.*]. — *ատուն*, banque [*իգ.*]

## Ե

**Եգիպտական.** d'Égypte
**Եզն.** bœuf [*ար.*]
**Եզր.** bord [*ար.*]

Ելակ. fraise [իգ.]
Ելնել. se lever. վեր —, monter. դուրս —, sortir
Եկեղեցական. ecclésiastique
Եկեղեցի. église [իգ.] մայր՝—, cathédrale [իգ.]
Եղբօրորդի. neveu [ար.]
Եղջերու. cerf [ար.]
Եղեւին. sapin [ար.]
Եպիսկոպոս. évêque [ար.]. արք —, archevêque
Եռանդ. ardeur [իգ.], zèle [ար.], empressement [ար.]
Երախտագիտութիւն. reconnaissance [իգ.]
Երգ. chanson [իգ.], chant [ար.] — ել, chanter. — իչ, chanteur
Երգեհոն. orgue
Երեկոյ. soir [ար.] — թ, soirée [իգ.]
Երկաթ. fer [ար.] — ուղի, chemin de fer
Երկայն. long [իգ. longue] — ութիւն, longueur [իգ.]
Երկին. ciel [ար.]
Երկիր. terre [իգ.]
Երկրագործ. cultivateur [ար.] agriculteur [ար.]. — ութիւն, agriculture [իգ.]
Երկրաշարժ. tremblement [ար.] de terre
Երկրորդ. second [սըկօն], deuxième
Երջանկութիւն. bonheur [ար.]
Երեւնալ. paraître, apparaître
Երջանիկ. heureux [էօռէօ]
Եւրոպա. Europe [իգ.]

# Զ

Զայն. le [իգ. la]. — որ, celui qui [իգ. celle qui]
Զանազան. divers
Զատիկ. Pâques [ար.]
Զարգանալ. se développer

Զարդարել. orner, parer. բանով մը —, orner կամ parer **de** quelque chose.
Զարմանալ. s'étonner. — ի, étonnant, surprenant
Զաւակ. enfant
Զբաղիլ. s'occuper. բանով մը —, s'occuper **de** quelque chose
Զբօսանք. récréation [էգ.]
Զբօսնուլ. s'amuser. բանով մը —, s'amuser **de** quelque chose
Զգայուն. sensible [գ. ի. ա. **à**]
Զեղուլ. combler
Զեղչ. escompte [ար.]. — ել, escompter
Զինուորական. militaire
Զլանալ. refuser
Զղջալ. se repentir [ի. ա. **de**]
Զմայլեցնել. ravir, charmer
Զմիւռնիա. Smyrne
Զրկանք. privation [էգ.]
Զրկել. priver
Զրպարտել. calomnier

# Ը

Ըմպելի. boisson [էգ.]
Ընդերք. entrailles [էգ.]
Ընդհանրապէս. généralement, en général
Ընթացք. cours [ար.]
Ընթերցանութիւն. lecture [էգ.]
Ընթրել. souper
Ընծայ. offre [էգ.], cadeau [ար.], présent [ար.] — ընել, faire présent [գ. ի. ա. **de**], offrir
Ընկեր. camarade. — ութիւն, compagnie [էգ.], société [էգ.]
Ընկուզենի. noyer [ար.]

Ընչատուփ. tabatière [իգ.]
Ընչաքաղց. avide. — ութիւն, avidité [իգ.]
Ընտանենալ. s'apprivoiser; se familiariser
Ընտիր. excellent
Ընտրել. choisir; élire

## Թ

Թագաւոր. roi [ար.]. — ութիւն, royaume [ար.]
Թագուհի. reine [իգ.]
Թաղար. pot [ար.] à fleur
Թաղել. enterrer; inhumer
Թատերական. théâtral
Թատրոն. théâtre [ար.]
Թեթեւ. léger. — ցնել, alléger
Թերանալ. manquer [ի. ա. à]
Թերթ. feuille [իգ.]
Թերութիւն. défaut [ար.]
Թեւ. aile [իգ.]
Թէ. que; si
Թէյ. thé [ար.]
Թթենի. mûrier [ար.]
Թիւ. nombre [ար.]
Թղթաբեր. courrier [ար.]
Թղթակից. correspondant [ար.]
Թղթակցութիւն. correspondance [իգ.]
Թղթավաճառ. papetier [ար.]
Թնդալ. retentir
Թշնամանել. offenser, outrager, insulter
Թողութիւն. pardon [ար.], rémission [իգ.]; absolution [իգ.]. — տալ, absoudre, remettre [Հ. գ. խ.]
Թուաբանութիւն. arithmétique [իգ]
Թուական. date [իգ.]
Թուխ. brun

Թուղթ. papier [առ.] · խաղալու —, carte [իգ.]
Թունաւոր (կենդանի). venimeux · — [տունկ] vénéneux
Թռուցիկ. cerf-volant [սէռ վօլան. առ.]
Թռչիլ. voler, s'envoler
Թռչնաճանճ. oiseau-mouche [առ.]
Թրջել. mouiller, tremper

## Ժ

Ժամանակ. temps [դան. առ.] · — ին, à temps
Ժամացոյց. montre [իգ.] զարթուցիչ —, réveille-matin [առ.]
Ժապաւէն. ruban [առ.]
Ժողովուրդ. peuple [առ.]
Ժողովք. assemblée [իգ.]
Ժուժկալել (գինիէ). s'abstenir

## Ի

Իբր. comme · — թէ, comme si
Իժ. vipère [իգ.]
Իմանալ. apprendre, entendre dire
Իմաստութիւն. sagesse [իգ.]
Իմացնել. avertir, informer, faire part, apprendre
Ինչ. quel; que; quoi. — ու, pourquoi · — պէս, comment; comme
Ինչք. biens [առ.]
Իշխան. prince · — ուհի, princesse
Իտալիա. Italie [իգ.]
Իր. chose [իգ.]
Իրաւամբ. avec raison
Իրաւունք. raison [իգ.] droit [առ.]
Իւսկիւտար. Scutari

# Լ

Լատին. latin
Լարել. monter
Լափել. dévorer, gober
Լաւ. bien· աւելի —, mieux
Լի. plein [գ. ի. ա. de] · — ու —, pleinement
Լիոն. Lyon
Լնուլ. combler
Լուալ. laver
Լուդովիկոս. Louis
Լուղակ. nageoire [եզ.]
Լուսահոգի. feu
Լուսին. lune [եզ.]
Լուր. nouvelle [եզ.]
Լռել. se taire
Լռութիւն. . silence [ար.]
Լսել. entendre; apprendre
Լսելիք. ouïe [եզ.]
Լրագիր. journal [ար.] gazette [եզ.]
Լքանել. abandonner

# Խ

Խալիֆայ. calife [ար.]
Խաղ. jeu [ար.] — ալ, jouer
Խանութ. boutique [եզ.]
Խաչ. croix [եզ.]. — աձեւիլ, se croiser
Խառնուիլ. se mêler [ի. ա. de]
Խելացի. intelligent, sage
Խելք. esprit [ար.]
Խեղճ. pauvre
Խիստ. très, fort, bien
Խլացնել. assourdir

խղճմտանք. remords [ար·]; conscience [էգ·]
խմել. boire· —իք· à boire, boire [ար·]
խնամել. soigner
խնամք. soin [ար·]
խնդիր. demande [էգ·], prière [էգ·]; question [էգ·]
խնդրել. prier [ա· ի· ա· **de**]; demander [ա· ի· ա· **de** կամ **à**]
խնձոր. pomme [էգ·] —ենի, pommier [ար·]
խոհեմ. prudent· —ութիւն, prudence [էգ·]
խոշոր. gros [էգ· grosse]
խոռոչաւոր. creux
խոստանալ. promettre [ա· ի· ա· **de**]
խոստովանիլ. se confesser; avouer, confesser
խոստովանող. pénitent
խոտ. herbe [էապ. էգ·]
խոր. profond· —ապէս, profondément
խորհուրդ. conseil [ար·]
խորշիլ. éviter [հ· գ· ի·]
խորովել. rôtir
խումբ. troupe [էգ·], groupe [էգ·], bande [էգ·]
խրատել. conseiller [ա· ի· ա· **de**]
խրճիթ. chaumière [էգ·], hutte [էգ·], cabane [էգ·]
խցահան. tire-bouchon [ար·]
խօսք. parole [էգ·]

## Ծ

ծախք. dépense [էգ.], frais [ար·]
ծածկել. couvrir
ծաղկազարդ. Pâques fleuries, le dimanche des Rameaux
ծաղր. risée [էգ·] raillerie [էգ·], moquerie [էգ·] —ընել, se moquer [գ· ի· ա· **de**], railler
ծամել. mâcher·

**Ծանր.** lourd, pesant
**Ծանօթ.** connu. —**ութիւն**, connaissance [իգ.]
**Ծառ.** arbre [ար.]
**Ծառայ.** serviteur [ար.]. —**ել**, servir [ա· ի· ա· à]
**Ծարաւ.** soif [իգ.]
**Ծեր.** vieux; vieil [իգ. vieille]. —**ակոյտ**, sénat [ար.] —**ունի**, vieillard; vieux
**Ծիրան.** abricot [ար.]. —**ի գօտի**, arc-en-ciel [ար.]
**Ծնիլ.** naître. **վերա**—, renaître
**Ծնունդ.** naissance [իգ.]
**Ծնրադրել.** s'agenouiller, se mettre **կամ** tomber à genoux
**Ծով.** mer [իգ.]
**Ծոց.** sein [ար.]
**Ծունկ.** genou [ար.]

## Կ

**Կազմել.** former
**Կազմուածք.** constitution [իգ.], tempérament [ար.]
**Կաթ.** lait [ար.]. —**նավաճառ**, laitier
**Կախել.** pendre
**Կաղնի.** chêne [ար.]. **ընտանի**—, noisetier [ար.], coudrier [ար.]
**Կամար.** voûte [իգ.]; arc [ար.]—**ակալ**, arc-boutant [ար.]
**Կամք.** volonté [իգ.]
**Կայծոռիկ.** ver luisant [ար.]
**Կանգուն.** aune [իգ.]
**Կանուխ.** de bonne heure, tôt
**Կաշի.** cuir [ար.] **էշու** —, chagrin [ար.], **ոչխարի** —, basane [իգ.]
**Կաչաղակ.** pie [իգ.]
**Կապ.** lien [ար.]; nœud [ար.]; attache [իգ.] — **ել**, lier, attacher
**Կառավարիչ.** gouverneur

Կառավարութիւն. gouvernement [ար.]
Կատակ. plaisanterie [իգ.] — ընել, faire des plaisanteries, plaisanter
Կատարելապէս. parfaitement, tout
Կարապետ. avant-coureur
Կարգ. classe [իգ.]
Կարգադրութիւն. arrangement [ար.]
Կարկին. compas [ար.]
Կարճ. court, bref — տես, myope — տեսութիւն, myopie [իգ.]
Կարող. capable [ի. ա. **de**]
Կարեւոր. important; nécessaire
Կացութիւն. situation [իգ.] position [իգ.]
Կեղտացի. Gaulois
Կենդանաբանութիւն. zoologie [իգ.]
Կենդանի. animal [ար.]
Կեռնեխ. merle [ար.]
Կեսար. César [սէզառ]
Կերակուր. repas [ար.], mets [ար.]
Կէս. demi; moitié
Կէտաձուկ. baleine [իգ.]
Կթել. traire
Կիրք. passion [իգ.]
Կիւրակէ. dimanche [ար.] Նոր —, Pâques closes, le dimanche de Quasimodo [քազիմօտօ]
Կլնել. avaler
Կճղակ. sabot [ար.]
Կշռել. peser
Կոթ. manche [ար.]
Կողով. panier [ար.], corbeille [իգ.]
Կոմս. comte [ընդ. ար.] — ուհի, comtesse [իգ.]
Կոյր. aveugle
Կոչուիլ. s'appeler, se nommer
Կոպիճ. caillou [ար.]

կոտրել. casser
կորուստ. perte [իգ.]
կորսնցնել. perdre
կուրծք. poitrine [իգ.]
կտակել. léguer
կտաւ. lin [ար.]; toile [իգ.]
կտոր. morceau [ար.] pièce [իգ.]
կրակ. feu [ար.]
կրել. porter
կրթել. élever
կրթութիւն. éducation [իգ.]
կրօնասէր. religieux
կրօնք. religion [իգ.]
կցել. joindre, annexer
կքել. fléchir
կօշկակար. cordonnier [ար.]

## Հ

հագուստ. habit [ադի. ար.], vêtement [ար.]
հազիւ. à peine
հազուագիւտ. rare
հալածել. poursuivre, persécuter
հակառակ. malgré, nonobstant, contre [հ. գ. ի.]
հաղորդել. communiquer
հաճելի. agréable. — ըլլալ, plaire
հաճիլ. vouloir bien, daigner
հաճոյք. plaisir [ար.]
համառօտ. abrégé, succinct. — ել, abréger
համարձակ. hardi [հառատի], libre. — ութիւն, hardiesse [իգ.], liberté [իգ.]. — իլ, oser. — եցնել, enhardir [ա. ի. ա. à]

Համբաւաւոր. renommé, fameux, célèbre
Համբերատար. patient [բառական]· — ութիւն, patience [իգ.]
Համբուրել. baiser
Համեմանք. épices [իգ.]
Համեստ. modeste. — ութիւն, modestie [իգ.]
Համրել. compter [քօնդէ]
Համրիչ. chapelet [ար.], rosaire [ար.]
Հայ.–երէն. Arménien, arménien
Հայր. père· մեծ —, grand père, aïeul — ենիք, patrie [իգ.]
Հանգիստ. repos [ար.]
Հանգուցեալ. feu
Հանդարտ. tranquille, coi [իգ. coite] calme — եցնել, apaiser, calmer, tranquilliser
Հանդէս. fête [իգ.]
Հանդիպիլ. rencontrer [Տ. գ. ի.]
Հանդիսական. spectateur, assistant
Հանդիսաւոր. solennel [ոօլանէլ]
Հանել. ôter, tirer. վեր —, monter, élever
Հանճար. génie [ար.]
Հաշուել. compter
Հասարակ. ordinaire
Հասկ. épi [ար.]
Հասկնալ. comprendre
Հասնիլ. arriver
Հաստատել. constater
Հասցէ. adresse [իգ.]
Հարթ. uni, plan, plat
Հարուած. coup [ար.]
Հարս. belle-fille [իգ.], bru [իգ.]
Հարստանալ. s'enrichir, devenir riche
Հարստացնել. enrichir, rendre riche
Հարստութիւն. richesse [իգ.]
Հարցնել. demander

Հարցում. question [քէսդիօն. իգ.]
Հաւ. poule [իգ.]; grand père, aïeul
Հաւասար. égal. — ապէս, également
Հաւատալ. croire [Հ. գ. ի.]
Հեծնել. monter
Հեկեկալ. sangloter
Հեղինակ. auteur [ար. և իգ.]
Հեշտութիւն. délice
Հեռանալ. s'éloigner
Հեռատես. presbyte. — ութիւն, presbytisme [ար.]
Հեռու. loin
Հետ. avec
Հետեւանք. conséquence [իգ.], résultat [ար.]
Հետեւիլ. suivre [Հ. գ. ի.]
Հերկել. labourer
Հէնրիկոս. Henri
Հիանալի. admirable, magnifique
Հիմնել. fonder
Հին. vieux [իգ. vieille]; ancien
Հիւանդ. malade. — ութիւն, maladie [իգ.]
Հիւսիս. nord [ար.]. — ային, septentrional [սէբդան-րիօնալ]
Հիւր. hôte [օգ. ար.] hôtesse [իգ.]
Հլու. docile [ի. ա. à]
Հնազանդ. obéissant, soumis [գ. ի. ա. à] — իլ, obéir
Հնդիկ. Indien
Հնդկաստան. Inde [իգ.]
Հնութիւն. antiquité [իգ.]
Հոգ. soin [ար.]. — ատածութիւն, sollicitude [իգ.]. — տանիլ, porter soin
Հոգելոյս. feu
Հոլանտացի. Hollandais [Հօլանտէ]
Հող. terre [իգ.]. — ագործ, laboureur [ար.]
Հոմերոս. Homère

Հոն. là, y
Հունձք. moisson [իգ.]
Հպարտ. fier, orgueilleux. — աբար, fièrement, orgueilleusement. — անալ, s'enorgueillir [գ. ի. ա. de]
Հռոմ. Rome [իգ.]. — այեցի, Romain
Հրաբխային. volcanique
Հրաշագործ. miraculeux, merveilleux
Հրաշակերտ. chef [շէ] d'œuvre [ար.]
Հրաշք. miracle [ար.], prodige [ար.]
Հրապարակել. publier
Հրապուրել. charmer
Հրապուրիչ. charmant
Հրաւէր. invitation [իգ.]
Հրդեհ. incendie [ար.]
Հրեայ. Juif, Hébreu [էպրէօ]
Հօտ. troupeau [ար.]
Հօրաքոյր. tante [իգ.]
Հօրեղբայր. oncle [ար.]

# Ձ

Ձագ. petit [ար.]
Ձախողութիւն. revers [ար.], malheur [ար.] contretemps [ար.]
Ձանձրացնել. ennuyer
Ձանձրոյթ. ennui [ար.]
Ձգել. laisser; quitter
Ձեռագործ. ouvrage [ար.] — ութիւն, manufacture [իգ.] fabrication [իգ.]
Ձեռնոց. gant [ար.]
Ձեւ. forme [իգ.]
Ձիւն. neige [իգ.]
Ձուկ. poisson [ար.]
Ձու. œuf — ածին ovipare

## Ղ

*Ղրկել.* envoyer, expédier
*Ղրուշ.* piastre [*իգ.*]

## Ճ

*Ճահիճ.* marais [*ար.*]
*Ճանբայ.* chemin [*ար.*], route [*իգ.*]
*Ճանբորդել.* voyager
*Ճանկ.* crochet [*ար.*], croc [*ար.*]; griffe [*իգ.*]
*Ճանճ* mouche [*իգ.*] — *վան*, chasse-mouches [*ար.*]
*Ճանչնալ.* connaître; reconnaître
*Ճաշ* (*կէս աւուր*). dîner [*ար.*]
*Ճաշակ.* goût [*ար.*]
*Ճաշել.* dîner
*Ճարտար.* adroit, habile [*ածկ.*]
*Ճերմակ.* blanc [*իգ.* blanche] — *եղէն*, linge [*ար.*]
*Ճիգ.* effort [*ար.*]
*Ճիշդ.* juste; justement, précisément
*Ճիւղ.* branche [*իգ.*]
*Ճճի.* ver [*ար.*] vermisseau [*ար.*]
*Ճշդապահ.* exact [*էկզաքդ*] — *ութիւն*, exactitude [*իգ.*]

## Մ

*Մազ.* cheveu [*ար.*]
*Մահ.* mort [*իգ.*]
*Մաղթել.* souhaiter
*Մայիս.* mai [*ար.*]
*Մայր.* mère [*իգ.*] — *իկ*, maman [*իգ.*] *մեծ* — grand' mère [*իգ.*], aïeule [*իգ.*]
*Մանիշակ.* violette [*իգ.*] — *ագոյն*, violet

Մանկութիւն. enfance [եզ.]
Մանրամասն. détaillé — ութիւն, détail [ար.]
Մաշիլ. s'user
Մառան. cave [եզ.]
Մատաղ. tendre, jeune
Մատենագրութիւն. littérature [եզ.]
Մատենադարան. bibliothèque [եզ.]
Մատանի. bague [եզ.], anneau [ար.]
Մատնոց. dé [ար.]
Մատուցանել. offrir, présenter
Մարգագետին. pré [ար.], prairie [եզ.]
Մարգարիտ. perle [եզ.]
Մարդ. homme [օմ, ար.]
Մարդկային. humain [իւմէն]
Մարել. éteindre
Մարիլ. s'éteindre
Մարմարիոն. marbre [ար.]
Մարսել. digérer
Մարտ. mars [ար.]
Մաքուր. propre. — ջուր, de l'eau pure
Մեկնում. départ [ար.]
Մեղադրել. blâmer, reprocher
Մեղք. péché [ար.]
Մենավաճառութիւն. monopole [ար.]
Մետաղ. métal [ար.]
Մէջ. dans; en; à [հ. ի.]
Միածալ. in-folio
Միայն. seul; seulement; ne ... que
Միանալ. se réunir; s'unir
Միլտոն. Milton
Մինչ. jusque; pendant que. — դեռ tandis que. — և jusque, jusqu'à .... — և որ, jusqu'à ce que
Միջատ. insecte [ար.].
Միս. viande [եզ.], chair [եզ.]

Միտք. esprit [ար.]. — ունենալ, avoir l'intention [ա. ի. ա. de], compter
Մխիթարել. consoler, soulager
Մկրատ. ciseaux [ար.]
Մնալ. rester
Մնացեալ. reste [ար.]
Մշակել. cultiver
Մոգական. magique
Մոլի. vicieux
Մոլորակ. planète [իգ.]
Մոլութիւն. vice [ար.]
Մոխիր. cendre [իգ.]
Մոռնալ. oublier [ա. ի. ա. de]
Մուն. moucheron [ար.]
Մուշտակ. fourrure [իգ.] — [Հագուստ] pelisse [իգ.]
Մուրալ. mendier
Մուրացկան. mendiant
Մսիլ. avoir froid
Մտածել. penser
Մտերիմ. intime
Մտիկ ընել. écouter [հ. գ. ի.]
Մտնել. entrer
Մտրուկ. poulain [ար.]
Մրմռալ. murmurer
Մրջիւն. fourmi [իգ.]
Մրցանակ. prix [ար.]. — բաշխութիւն, distribution [իգ.] des prix
Մօտ. près, proche. — ակայ, voisin. — ալուտ, imminent — ենալ, s'approcher [գ. ի. ա. de]
Մօրեղբայր. oncle [ար.]

## Յ

Յակոբ. Jacques
Յաղթական. victorieux, triomphant

Յաղթել. vaincre [Տ. գ. ի.]
Յանդիմանութիւն. reproche [ար.], réprimande [էգ.]
Յանկարծ. tout à coup; soudain
Յանձնակատար. commissionnaire
Յանձնարարել. commissionner
Յանձնարարութիւն. commande [էգ.], commission [էգ.]
Յաջողիլ. réussir [ա. ի. ա. à]
Յաջորդել. succéder
Յառաջիկայ. prochain
Յատկութիւն. qualité [էգ.]
Յարաբերութիւն. relation [էգ.]
Յարգել. estimer, respecter — ի, vénérable
Յարդ. chaume [ար.]; paille [էգ.]
Յարել. reprendre
Յարկ. étage [ար.]
Յարձակիլ. assaillir, attaquer [Տ. գ. ի.]; se jeter, s'élancer, fondre
Յարմար. propre, convenable [գ. ի. ա. à]
Յափշտակասէր. rapace
Յափշտակել. ravir; s'arroger
Յեռանդն. avant-hier
Յիշել. se souvenir [ա. կամ գ. ի. ա. de], se rappeler [ա. ի. ա. de]
Յիշողութիւն. mémoire [ար.]
Յոգնիլ. être fatigué, se fatiguer, se lasser
Յոգնութիւն. fatigue [էգ.] · peine [էգ.]
Յոյս. espoir [ար.], espérance [էգ.]
Յուզել. émouvoir, toucher
Յուլիս. juillet [ար.]
Յուղարկաւորութիւն. convoi [ար.], funérailles [էգ.], obsèques [էգ.]
Յունարէն. grec [էգ. grecque]
Յունիս. juin [ար.]
Յունուար. janvier [ար.]

Յուսալ. espérer
Յուսահատեցնել. désespérer
Յօդուած. article [ար.]
Յօժարակամ. volontiers, avec plaisir
Յօնք. sourcil [սուռափ. ար.]
Յօրինել. composer

## Ն

Նա. il, [իգ. elle]; lui· — որ, celui qui [իգ. celle qui]. — և, aussi, encore
Նախագահ. président
Նախադասութիւն. proposition [իգ.]
Նախազգացում. pressentiment [ար.]
Նախապատուութիւն. préférence [իգ.]
Նախատինք. injure [իգ.]
Նախկին. ancien
Նախնիք. aïeux
Նախորդ. précédent
Նամակ. lettre [իգ.]; missive [իգ.]
Նարինջ. orange [իգ.]
Նարտ. trictrac [Թուխքթուղք. ար.]
Նաւ. vaisseau [ար.] · — արկութիւն, navigation [իգ.] · — ակ, barque [իգ.], caïque [իգ.]
Ներդաշնակ. harmonieux [աա.մձնիէօ]
Ներկայ. présent. — ըլլալ, assister· — ացնել, représenter; présenter— ացում, représentation [իգ.]
Ներկել. teindre
Նեցուկ. béquille [իգ.]
Նկատմամբ. concernant, touchant [Հ. ի.]
Նկար. peinture [իգ.] — ել, peindre. — իչ, peintre · — ագրութիւն, description [իգ.]
Նման. semblable, pareil· — իլ, ressembler. — օրինակ, pareil, tel, même

Նշանաւոր. distingué, remarquable
Նոյն. même
Նորոգել. réparer
Նուէր. présent [ար.], cadeau [ար.]
Նուիրել. offrir, présenter
Նուռ. grenade [իգ.]
Նպատակ. but [ար.]
Նստարան. banc [պան. ար.]
Նիւտոն. Newton [Նէօդօն]

## Շ

Շաբաթ. [Հաֆդա]. semaine [իգ.]. —[օրուան անունը] samedi [ար.]
Շագանակ. châtaigne [իգ.]. —ագոյն, châtain
Շահ. gain [ար.], profit [ար.], bénéfice [ար.]; intérêt [ար.]. —աւոր, lucratif, avantageux [ար.] —ադիտութիւն, spéculation [իգ.]
Շաղուել. pétrir
Շապիկ. chemise [իգ.]
Շարական. hymne [իմն. իգ.], cantique [իգ.]
Շարունակաբար. continuellement, sans relâche
Շարունակել. continuer
Շաքար. sucre [ար.]; bonbon [ար.]
Շիլին. shelling
Շիկահաւ. fauvette
Շինել. faire; fabriquer; bâtir, construire
Շիշ. bouteille [իգ.]
Շնորհ. grâce [իգ.] —իւ, grâce à . . .
Շնորհակալ. obligé, redevable—ըլլալ, remercier [Հ.գ.ի.]
Շուկայ. marché [ար.]
Շուշան. lis [լիս. ար.]
Շուտ. vite
Շուք. ombre [իգ.]

Շտեմարան. grenier [ար.]
Շրթունք. lèvres [իգ.]
Շրջաբերական. circulaire [իգ.]
Շրջազգեստ. robe [իգ.]
Շրջապատել. entourer
Շքեղ. magnifique, splendide, élégant

## Ո

Ո՜հ. oh!
Ողբալի. plaintif, lamentable
Ողողում. inondation [իգ.]
Ողորմութիւն. aumône [իգ.], charité [իգ.]
Ողջոյն. salutation [իգ.], salut [ար.]
Ոչ. non.—ինչ, rien.— . . . —ni . . . ni
Ոչխար. mouton [ար.]
Ոչնչանալ. être anéanti, s'anéantir
Ոստայնանկ. tisserand
Ոստիկան. commissaire [ար.]—ութիւն, préfecture [իգ.] de police, police [իգ.]
Ոստրէ. huître [իւիգռ. իգ.]
Ոտանաւոր. vers [ար.]
Որբ. orphelin
Որոճալ. ruminer
Որոշել. distinguer, décider [ա. ի. ա. de], résoudre [ա. ի. ա. à կամ de]
Որպէս. comme.—զի, pour que, afin que
Որջ. tanière [իգ.], repaire [ար.], terrier [ար.]
Ութն. huit (*)

(*) Huit կ'արտասանուի «իւիթ» ձայնաւոր բառէ մը առաջ դրուած, կամ երբ գոյական գործածուած և կամ խօսքին վերջը եկած ատեն: Ինչ· Huit [իւիթ] ans. Sept, huit [իւիթ]. Un huit [իւիթ] de chiffre. Ils étaient huit [իւիթ]: Իսկ եթէ իրմէ ետքը եկող բառը բաղաձայնով սկսի՝ «իւի» կը հնչուի: Huit [իւի] chevaux.

Ուխտաւոր. pélerin
Ուղղամտութիւն. intégrité, [իգ.] probité [իգ.]
Ուղղել. adresser; corriger
Ուշադիր. attentif [գ. ի. ա. à]
Ուշադրութիւն. attention [իգ.]
Ուսեալ. instruit
Ուսումն. instruction [իգ.]
Ուսուցիչ. maître
Ուսուցչուհի, maîtresse
Ուտել. manger. —իք, à manger, manger
Ուրախ. aise [ա. ի. ա. de] — անալ, se réjouir. —ու-թիւն, joie [իգ.]

## Ջ

Ջափազանց. trop, excessivement
Ջղջիկ. chauve-souris [իգ.]
Ջորնալ. se dessécher
Ջորցնել. sécher
Ջորքոտանի, quadrupède [քուատտոբուբէտ . ար.]
Ջուխայ. drap [ար.]

## Պ

Պակաս. moins —ութիւն, défaut [ար.]
Պահանջել. réclamer, exiger
Պահարան. enveloppe [իգ.]
Պահել. conserver, garder
Պաղարիւնութիւն. sang-froid [ար.]
Պաղեստին. Palestine
Պայթում. éruption [իգ.]; explosion [իգ.]
Պայման. condition [իգ.]. — աժամ, échéance [իգ.]
Պայտել. ferrer

Պանդոկ. auberge [իգ.]. hôtel [օդէլ. ար.]
Պաշտպան. protecteur. — ել, protéger, défendre
Պաշտօն. service [ար.], office [ար.], ministère [ար.]; emploi [ար.], fonction [իգ.]
Պառկիլ. se coucher
Պասեք. pâques [իգ.]
Պատ. mur [ար.]
Պատահիլ. rencontrer [հ. գ. ի.]
Պատահմամբ. par hasard
Պատասխան. réponse [իգ.]. — ել, répondre
Պատերազմ. guerre [իգ.], bataille [իգ.], combat [ար.]
Պատիժ. punition [իգ.], châtiment [ար.]
Պատիճ. trompe [իգ.]
Պատկեր. tableau [ար.]; image [իգ.] — ազարդ, illustré
Պատճառել. causer, occasionner, faire
Պատճէն. copie [իգ.]
Պատմութիւն. histoire [իսդուար. իգ.] Սրբազան —, histoire sainte. բնական —, histoire naturelle
Պատուաբեր. } honorable [օնօռապլ]
Պատուաւոր. }
Պատուիրել. ordonner, commander, enjoindre [ա. ի. ա. de]
Պար. danse [իգ.]. — ել, danser
Պարապուրդք. vacances [իգ.]
Պարարտանալ. engraisser, s'engraisser
Պարգեւ. don [ար.], cadeau [ար.], présent [ար.]
Պարզ. simple
Պարծենալ. se vanter, se glorifier, se piquer [գ. ի. ա. de]
Պարկեշտ. honnête [օնէդ]. — ութիւն, honnêteté [իգ.]
Պարոն. monsieur [մօսիէօ]
Պարունակել. contenir, renfermer
Պարպել. décharger, vider

Պարտիզպան. jardinier
Պետրոս. Pierre
Պէտք. besoin. — ըլլալ, falloir — ունենալ avoir besoin [դ· ի· ա· **de**]
Պիդիաս. Pythias [բիդիաս]
Պիգմալիոն. Pygmalion
Պլպլալ. scintiller
Պղինոս. Pline
Պսակ. couronne [եզ·]. — ել, couronner
Պտըտիլ. se promener
Պտղաբեր. fertile
Պտղատու. fruitier
Պօղոս. Paul
Պօրտօ. Bordeaux

## Ջ

Ջահ. torche [եզ·]
Ջանալ. tâcher, s'efforcer [ա· ի· ա· **de**]· chercher [ա· ի· ա· **à**]
Ջորի. mulet [ար·]
Ջրել. arroser

## Ռ

Ռասին. Racine
Ռուսիա. Russie [եզ·]

## Ս

Սագ. oie [եզ·]
Սակայն. cependant, pourtant, toutefois
Սահման. limite [եզ·], borne [եզ·]. — ել destiner; limiter; établir

Սաղաւարտ. casque [իգ.]
Սանդիմ. centime [ար.]
Սառ. glace [իգ.]
Սաստիկ. violent
Սեղան. table [իգ.].—ատուն, réfectoire [ար.] —աւոր, banquier
Սէնէկա. Sénèque
Սէր. amour, affection [իգ.], attachement [ար.]
Սիրել. aimer [ա. ի. ա. à]
Սիրուն. joli, gentil
Սիրտ. cœur [ար.]
Սխալ. faute [իգ.]; fautif, erroné.—իլ. se tromper
Սկահ. gobelet [ար.]—ակ, tasse [իգ.]
Սկովտիական. écossais
Սկսիլ. commencer; se mettre [ա. ի. ա. à]
Սնանիլ. se nourrir [գ. ի. ա. de]
Սնանկանալ. faire faillite
Սնանկութիւն. faillite [իգ.], banqueroute [իգ.]
Սնունդ. nourriture [իգ.]
Սնտուկ. coffre [ար.], caisse [իգ.]
Սոկրատ. Socrate
Սողոմոն. Salomon
Սողուն. reptile [ար.]
Սոսկալի. horrible, affreux, terrible, redoutable
Սովորական. ordinaire
Սովորութիւն. habitude [իգ.].—ունենալ, avoir l'habitude [ա. ի. ա. de]
Սորվեցնել. apprendre [ա. ի. ա. à], enseigner [ա. ի. ա. à]
Սորվիլ. apprendre [ա. ի. ա. à]
Սու. sou [ար.]
Սուղ. cher
Սունկ. champignon [ար.]
Սուրճ. café [ար.]

Սպաննել. tuer, assassiner, exécuter
Ստամոքս. estomac [ար.]
Սպառել. épuiser, consommer
Սպասել. attendre [Տ. գ. ի.]
Ստեղծել. créer
Ստիպել. forcer [ա. ի. ա. à կամ de], obliger [ա ի. ա. à կամ de]
Ստիպողականութիւն. nécessité [իգ.]
Ստորերկրեայ. souterrain
Ստորեւ. ci-dessous, en bas, ci-bas
Ստեւ. poil [ար.]
Սրբազան. sacré, saint; monseigneur
Սրտագին. cordial
Սրտայոյզ. } touchant, attendrissant
Սրտառուչ.
Սրտմտեցնել. fâcher
Սփոփանք. soulagement [ար.], consolation [իգ.]
Սփռել. répandre
Սեւ. noir

## Վ

Վախճանեալ. feu, défunt
Վախնալ. craindre [ա. ի. ա. de], avoir peur [ա. ի. ա. de]
Վաճառական. marchand, négociant — ութիւն, commerce [ար.]
Վաճառատուն. maison [իգ.] magasin [ար.]
Վայ ձեզ. malheur à vous!
Վայելք. jouissance [իգ.], plaisir [ար.]
Վայրենի. sauvage
Վայրկեան. moment [ար.], instant [ար.], minute [իգ.]
Վանել. chasser

վարժեցնել. accoutumer [ա. ի. ա. à]
վարձատրութիւն. récompense [իգ.]
վարմունք. conduite [իգ.]
վարսակ. avoine [իգ.]
վեհափառութիւն. Majesté [իգ.]
վերաբերիլ. appartenir
վերադարձ. retour [ար.]
վերարկու. manteau [ար.]
վէճ. différend [ար.], discussion [իգ.]
վիզ. cou [ար.]
վերցնել. élever, lever, soulever; ôter, enlever. գետնէն —, ramasser
վեց. six (*). — երորդ, sixième
Վիէննա. Vienne [իգ.]
վիճաբանիլ. discuter
վիճակ. état [ար.]
վիշտ. douleur [իգ.], peine [իգ.], chagrin [ար.]
վիրաւորել. blesser
վիրաբոյժ. chirurgien
վհուկ. sorcier
վճարել. payer, acquitter
վճարում. payement [ար.]
վշտացնել. affliger, fâcher
վստահ. sûr, certain. — ութիւն, confiance [իգ.] — եցնել, assurer
վտանգ. danger [ար.], péril [ար.] — աւոր, dangereux, périlleux
վրէժ. vengeance [իգ], revanche [իգ.], — առնել, se venger [գ. ի. ա. de]
վրիպակ. erreur [իգ.], faute [իգ.] — աց ցանկ, errata [ար.].

(*) Six կը հնչուի «սիզ» ձայնաւորի կամ անձայն h ի առջեւ. -խօսքի մը վերջը եկած կամ իբր գոյական գործածուած ատեն «սիս», և «սի» կը հնչուի բաղաձայնի առջև:

# Տ

Տագնապ. embarras [ար.]
Տալ. donner· փոխ —, prêter. ինքզինքը—, se livrer, s'adonner
Տակ. sous [Հ. ի.], au-dessous [ի. ա. de]
Տաղանդ. talent [ար.]
Տաճկաստան. Turquie [իգ.]
Տաճկերէն. turc
Տանիլ. mener, amener; porter, apporter
Տանիք. toit [ար.]
Տանձ. poire [իգ.] — ենի, poirier [ար.]
Տանջել. bourreler, tourmenter
Տառապիլ. souffrir
Տարիք. âge [ար.] — ոտ, âgé
Տարփանք. amours
Տարօրինակ. extraordinaire, singulier
Տգեղ. laid, vilain
Տեղ. place [իգ.], lieu [ար.], endroit [ար.]. — ի ունենալ, avoir lieu. — ափոխել, transporter. — ափոխութիւն, transport [ար.]
Տեղալ. pleuvoir
Տեղեկութիւն. information [իգ.] renseignement [ար.]
Տեսարան. spectacle [ար.], scène [սէն. իգ.]
Տեսակցութիւն. entrevue [իգ.]
Տիբեր. Tibère
Տիրանալ. se rendre maître [գ. ի. ա. de]
Տիրել. régner
Տխուր. triste
Տկար. faible. — անալ, s'affaiblir
Տձեւ. difforme
Տնկել. planter
Տնօրէն. directeur [ար.]

Տոկալ. supporter [չ. գ. ե.].
Տող. ligne [եգ.]
Տունկ. plante [եգ.]
Տուփ. boîte [եգ.]
Տրամադիր. disposé
Տրայանոս. Trajane
Տրտմիլ. se chagriner, s'attrister
Տօն. fête [եգ.]. —ել, célébrer, fêter

## Ր

Րասին. Racine

## Ց

Ցասկոտ. irascible, colère
Ցաւ. mal [ար.]. —ել, avoir mal [գ. ե. ա. à]
Ցոյց. parade [եգ.], étalage [ար.] —տալ, montrer
Ցորեկ. jour [ար.]
Ցուցակ. liste [եգ.]

## Փ

Փայլիլ briller, luire
Փայլուն. brillant, luisant
Փառք. gloire [եգ.]
Փաստ. raison [եգ.]; preuve [եգ.]. —աբան, avocat
Փարայ. para [ար.]
Փափաքիլ. désirer
Փիլիսոփայ philosophe
Փիղ. éléphant
Փոխանակ. au lieu de —ագիր, lettre de change, traite [եգ.]. — ել, échanger; remplacer
Փոխել. changer

Փոկ. phoque
Փորձ. épreuve [իգ.] — ել, essayer [ա. ի. ա. **de** կամ **à**] — առութիւն, expérience [իգ.]
Փութալ. s'empresser, se hâter [ա. ի. ա. **de**]
Փունջ. bouquet [ար.]
Փսիաթ. natte [իգ.]
Փրկել. sauver, délivrer

## Ք

Քահանայ. prêtre
Քաղ. récapitulation [իգ.]
Քայլ. pas [ար.] — ել, marcher
Քանակութիւն. quantité [իգ.]
Քանի. combien — մը, quelques. — որ, puisque
Քաշել. tirer. ետ — retirer
Քաշուիլ. se retirer
Քաջ. brave, courageux. — առութիւն, courage [ա
Քար. pierre [իգ.]
Քացախ. vinaigre [ար.]
Քեռորդի. neveu [ար.]; nièce [իգ.]
Քննադատել. critiquer
Քննել. examiner
Քսակ. bourse [իգ.]
Քրիստոս. Christ [քաւիող]
Քրտնիլ. suer, transpirer

## Օ

Օգնել. secourir, aider, assister [Հ. գ. ի.]
Օգնութիւն. secours [ար.], aide [իգ.]
Օգոստոս. août [ու. ար.]
Օգտակար. utile — ապէս, utilement, avantageusem

ժիտ. dot [ատզ. իգ.]
խա. ocque կամ oque [իգ.]
ձ. serpent [ար.]
տար, — ական. étranger
ր. jour [ար.], journée [իգ.]. կէս—, midi [ար.] հետեւեալ—ը, le lendemain, le jour d'après

# Ֆ

էնէլօն. Fénélon
րանսա. France [իգ.]
րանսերէն. français
րանք. franc [ար.]



## ՎՐԻՊԱԿՔ

| էջ | տող | սխալ | ուղիղ |
|---|---|---|---|
| 60 | 13 | datée de | datée du |
| 65 | 10 | Paques | Pâques |



# ՖՐԱՆՍԵՐԷՆ ԽԻՍՏ ԳՈՐԾԱԾԱԿԱՆ ԱՌԱԿՆԵՐ (*)

Il faut battre le fer tandis qu'il est chaud.

Երկաթը տաք տաք ... ծեծուի. (տէմիր քավը... տա տէօյիւլիւր)։

Ce qui vient de la flûte s'en retourne au tambour.

Առանց աշխատութեա... ստացուած հարստութի... նը շուտով կ'երթայ, կ'... չնչանայ։

Un tiens vaut mieux que deux tu l'auras.

Այսօրուան հաւը վա... ուան սագէն աղէկ է։

A bon entendeur demi-mot կամ peu de paroles.

Իմացողին մէկ բառ ... չ'իմացողին հազար խ... չ'ըներ։

Tant va la cruche à l'eau qu'à la fin elle se casse.

Կուժը ջրին ճանապար... կը կոտրի. (սու պարտա... սու եօլունտա քըրըլըր...)

Il vaut mieux tard que jamais.

Լաւ է անագան ... երբէք։

La pelle se moque du fourgon.

Մրոտը կը ծաղրէ գ... ճոտն. (գազան գազա... տիպին գարա տըր տէ...)

Selon ta bourse gouverne ta bouche.

Կարողութենէդ վեր ծ... մի ըներ. (այաղընը ... կանընա գատար ուզա...)

---

(*) Ֆրանսերէն «առակաց,» «ոճերու» ևն. Ճոխ Հ... քանդյ մը կը գտնուի «Ոճք, յառնկարանութիւնք, ... և մասնաւոր դիտելիք Ֆրանս. լեզուի» անուն երկասի... թեանս մէջ։